# ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ

Վ. ԿԱՐԵՆՑ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Իջնում է փափուկ,
Ամպերից ճերմակ,
Առաջին ձյունը՝
Բամբակի նման:
Իջնում է հանդարտ
Ու շերտով բարակ
Փռվում փողոցի
Մայթերի վրա:
Փռվում դաշտերին,
Տան կտուրներին,
Մերկացած, դալուկ,
Թուխ այգիներին:
Առաջին ձյան հետ
Դուրս եմ եկել ես,
Եվ այնպես տաք է,
Եվ ցուրտ է այնպես:
Ճերմակ ճամփան է
Իմ առջև փռվել,
Ես առաջինն եմ
Այդ ճամփան բռնել:
Թող ընկերներս
Այս առավոտյան
Իմ ոտնահետով
Մտնեն դասարան:
Քայլում եմ ուրախ,
Քայլում եմ թեթև,
Մաղվում է ձյունը
Ոնց ծաղկաթերթեր:
Զնգզնգիկն է
Ափիս մեջ հալչում,
Դպրոցի զանգն է
Ջերմ ձայնով կանչում:






Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Է. ՏՈՒԶՔԲԱՇՅԱՆ — Էջմիածնի Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆԻ անվան դպրոցի 7-րդ դասարանի գերազանցիկ աշակերտ, դրուժինայի խորհրդի նախագահ։

*Լուսանկար՝ ՆԵՄՐՈՒԹԻ*

# ՄԵՆՔ ԿՐԱՍՆԱՅԱ ՊՐԵՍՆՅԱՅԻՑ ԵՆՔ

(Դեկտեմբերյան զինված ապստամբության հիսուն տարին)

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

Տարիներ առաջ ես սովորում էի Մոսկվայում։ Այդ ժամանակ ինձ հանձնարարեցին ղեկավարել մայրաքաղաքի գործարաններից մեկի կոմերիտական քաղխմբակը։

Այսօր ուզում եմ պատմել, թե ինչպես անցավ մեր պարապմունքներից մեկը։ Դեկտեմբերին էր։ Ձնայած սառնամանիքին, երիտասարդ բանվորները սկսեցին հավաքվել գործարանի տեխնիկական դիրեկտորի առանձնասենյակը, որտեղ սովորաբար տեղի էին ունենում պարապմունքները։ Վերջում եկան երկու անբաժան ընկերները՝ Վալենտինա Նաումովան և Ալեքսանդր Սավելևը։

— Դե՛, որ Վալենտինան ու Ալեքսանդրը եկան, սկսենք,— ուրախ ասաց շագանակագույն մազերով և խաժ աչքերով սիրունատես մի աղջիկ, որին անվանում էին Լիդիա Կոժինա։

— Սկսե՛նք, սկսե՛նք... — պնդեցին Զինաիդա Մակարովան, Եկատերինա Էյդելմանը և մյուսները։

Ես սեղմ-սեղմ նայում էի պատից կախված ժամացույցին, նայում էի լուսամուտից դուրս, ուր առատորեն իջնում էին ձյան խոշոր փաթիլները։ Այս չվրիպեց կոմերիտականների ուշադրությունից։

— Ընկեր պրոպագանդիստ, բոլորը եկել են, էլ ո՞ւմ ենք սպասում,— դիմեց նրանցից մեկը։

Իսկ ես սպասում էի վարպետ Պյոտր Կուզմիչին։ Նա պետք է պատմեր 1905 թվականի դեկտեմբերյան զինված ապստամբության մասին, որին մասնակցել էր ինքը։ Եվ ինչքա՜ն մեծ եղավ կոմերիտականների ուրախությունը, երբ դուռը բացվեց, և ներս մտավ նա, Պյոտր Կուզմիչը, միջահասակ, ամրակազմ մարմնով, բայց արդեն խորշոմախիտ դեմքով մի ծերունի։

— Վարպետը եկա՜վ։

— Պյոտր Կուզմիչը,— ուրախ բացագանչեցին այս ու այն կողմից։

Նա հանեց վանդակավոր կեպին, որի վրայի ձյունը մաքրել էր դրսում, եղջյուրե մեծ ակնոցները հրեց քթարմատը և բարևելով՝ աչքը գցեց ժամացույցին։

— Ճիշտ նշանակված ժամանակին եք եկել,— հանդիմանեցի ես՝ մյուսներից ոչ պակաս ուրախացած։

Նա ժպտադեմ հանեց ակնոցները, թաշկինակով սրբեց ապակիները և առանց աչքերին դնելու՝ շարունակեց.

— 1905 թվականի դեկտեմբերի 7-ին, Մոսկվայի բոլշևիկների որոշմամբ՝ բանվորների դեպուտատների Մոսկվայի Սովետը հայտարարեց ընդհանուր քաղաքական գործադուլ՝ հետագայում ապստամբության վերածելու պայմանով։

Կանգնեցին քաղաքի գործարաններն ու ֆաբրիկաները, փակվեցին խանութները, դժվարացավ երթևեկությունը։

Այսօրվա պես հիշում եմ։ Երբ Պրեսնյայում Պրոխորովյան մանուֆակտուրայի բանվորները թողեցին աշխատանքը, տերերը կարծում էին, թե այդ մի սովորական գործադուլ է և հնարավորություն կլինի շուտ ճնշել։ Բայց դեկտեմբերի 9-ին, բանվորները դուրս եկան փողոց և սկսեցին բարիկադներ կառուցել։ Երեկոյան դեմ Պրեսնյայի շրջանի բոլոր գլխավոր փողոցներում բարիկադներ էին բարձրացել։ Իշխանությունը Պրեսնյայում անցավ ռևոլյուցիոն կոմիտեի ձեռքը, և ոստիկանությունը փախուստի մատնվեց։ Ցարական կառավարությունն արտակարգ միջոցներ ձեռնարկեց ապստամբությունը ճնշելու համար։

Դժվար էր դառնաշունչ օրերին և գիշերներին բարիկադներում։ Պակասում էր զենքը, պարենամթերքը, բայց բանվորները հերոսաբար մարտնչում էին կառավարական զորքերի դեմ, որոնք փորձում էին գրավել Պրեսնյան։

Շատ ծերունիներ ու երեխաներ փողոցներում խարույկներ էին վառում, որպեսզի ապստամբ բանվորները հերթով գան տաքանան։ Խարույկների վրա ջուր էին տաքացնում, ճաշ եփում, չորացնում թաց շորերը...

Դրությունը ծանր էր, բայց ավելի ծանրացավ, երբ կառավարական զորքերն ու ոստիկանները վերջապես կարողացան բանտարկել ապստամբության շտաբի՝ Մոսկվայի բոլշևիկների կոմիտեի գրեթե բոլոր անդամներին։ Քաղաքում ապստամբները գործում էին իրարից անջատ։

Կրասնայա Պրեսնյան մարտնչում էր։ Կատաղած տերերը Պետերբուրգից շտապ կանչեցին Սեմյոնովյան գունդը և... Պրեսնյան ընկավ...

Մեր վարպետը կանգ առավ, ակնոցներն աչքերին դնելով խորը հառաչեց և ձեռքերը կրծքին ծալելով՝ շարունակեց.

— Պատժիչ ջոկատները սկսեցին հաշիվ տեսնել բանվորների հետ, նրանք այրեցին Պրեսնյայի շրջանի բնակելի շատ տներ... Ապստամբությունը ճնշվեց, բայց ռևոլյուցիայի գործը չմեռավ...

— Իսկ քանի՞ տարեկան էիք այն ժամանակ դուք, Պյոտր Կուզմիչ,— անհամբեր հարցրեց Լիդիա Կոժինան, սիրուն աչքերը թարթելով։

Ծերունին ասես սթափվեց և ակնոցների տակից նայելով երիտասարդներին, պատասխանեց.

— Հինգ թվականին, սիրելի Լիդիա, ես մոտավորապես ձեր տարիքին էի,— նա դանդաղ սրբեց կարճ բեղերը և խորը հառաչելով ավելացրեց.— մանուֆակտուրայում աշխատում էինք 12—14 ժամ։ Ստացածներս ի՞նչ էր. մի քանի գրոշ... Ուրիշ է այժմ, ընկերներ։ Մեծ Հոկտեմբերը ազատություն բերեց ժողովուրդներին... Բայց հինգ թվականը երբեք չի մոռացվի։ Մեծ Լենինն ասել է, որ առանց 1905 թվականի փորձի, 1917 թվականի Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթությունն անհնարին կլիներ։

Պրեսնյան այն ժամանակ էլ ցույց տվեց իրեն, իր պրոլետարական ուժը։ Այժմ էլ կրասնոպրեսնյականները հետին շարքերում չեն։ Նրանք ժամկետից շուտ կատարեցին հնգամյա պլանը և սոցիալիստական մրցություն են ծավալել՝ երկրին ավելի շատ և բարձրորակ արտադրանք տալու համար։ Կրասնայա Պրեսնյան այժմ Մոսկվայի բարեկարգ թաղամասերից մեկն է։ Շուտով մետրոն կհասնի այն ակումբը, որտեղ 1918 թվականի դեկտեմբերին Պրեսնյայի ռայոնի բանվորական կոնֆերանսում ելույթ է ունեցել Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը։

— Ես մասնակցում էի այդ կոնֆերանսին և երբե՞ք-երբե՞ք չեմ մոռանա այդ օրը,— ասաց Պյոտր Կուզմիչը։— Խոսելով միջազգային դրության մասին, Վլադիմիր Իլյիչը նկարագրեց այն դժվարությունները, որոնցում ապրում էր երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան։ Երկիրը գտնըվում էր քայքայված վիճակում, պակասում էր հացը, վառելիքը։ Լենինը հույս էր տալիս, որ մենք կհաղթահարենք բոլոր տեսակի դժվարությունները։ Եվ մեր դրությունը,— ասում էր Լենինը,— որքան էլ դժվար լինի, վստահություն է ներշնչում, որ մենք մենակ չենք պայքարում արդար գործի համար, այլ որ մենք ունենք դաշնակիցներ՝ յուրաքանչյուր երկրի բանվորները։

Աղջիկներն ու տղաները շունչները պահած՝ լսում էին հին բանվորին։

— Ա՛յ, Ալեքսանդր,— հանկարծ դարձավ նա Սավելևին,— այսօր քո մեքենայի վրա տեսա կարմիր դրոշ։ Սիրտս լցվեց ուրախությամբ։ Կարմիր դրոշը ռևոլյուցիայի խորհրդանշանն է, ամուր պահիր քո ձեռքում...

Վալենտինա Նաումովան նայեց Ալեքսանդրին, որի դեմքը շառագունել էր, իսկ աչքերն արտակարգ խոշորացել։ Նա հպարտ էր, որ իր ընկերն արժանացավ վարպետի խրախուսանքին։



...սկսեցին բարիկադներ կառուցել։

Երիտասարդ բանվորների դեմքերն արտահայտում էին մի բան՝ ամեն ինչով լինել առաջավոր, ամեն ինչով նմանվել Կրասնայա Պրեսնյայի բանվորներին։

— Պիոներական վզկապն էլ կարմիր գույն ունի,— ասաց Լիդիա Կոժինան, որը ջոկատավար էր դպրոցներից մեկում։

— Այո՛, Լիդիա,— նրա գլուխը փաղաքշելով ասաց վարպետը։

— Մեր ջոկատի պիոներները եղել են Կրասնայա Պրեսնյայում, «Ակվարիում» այգում և բանվորների դեկտեմբերյան զինված ապստամբության հետ կապված մյուս վայրերում,— շարունակեց

լիզիան,— զրուցել ենք ապստամբության շատ մասնակիցների հետ։

— Լավ է, լավ է,— կզակը քորելով նկատեց Պյոտր Կուզմիչը,— բայց այդ այցելությունների արդյունք պետք է տան։ Պիոներները թող լավ իմանան, որ իրենց պապերն ու հայրերը պայքարով են նվաճել աշխատավորության ազատությունը։ Նրանք պարտավոր են լավ սովորել, խորը գիտելիքներ ձեռք բերել և դառնալ կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակիցներ։

— Իսկ ո՞վ կարող է ասել,— շարունակեց նա, — թե ի՞նչ գնահատական է տվել մեծ Լենինը Մոսկվայի բանվորների զինված ելույթներին։

Զինաիդա Մակարովան, որ պատրաստվում էր տեխնիկումի ընդունելության քննություններին, ձեռքը բարձրացրեց։

— Լենինը ասել է, որ առաջին անգամ համաշխարհային պատմության մեջ ռևոլյուցիոն պայքարն այնպիսի մեծ ուժ ստացավ այն բանի շնորհիվ, որ զինված ապստամբությունը միացվեց մասսայական գործադուլի հետ։

— Այդպե՞ս, աղջիկս,— ժպտադեմ ասաց ծերունին՝ բեղերը սրելով։

— 1905 թվականի դեկտեմբերյան ապստամբությունն իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական ռևոլյուցիայի գագաթնակետն էր,— առանց թույլտվություն վերցնելու լրացրեց Եկատերինան, հետո զգալով, որ անհարմար էր առանց ձայն խնդրելու խոսելը՝ կարմրեց։

— Ճի՛շտ է,— հավանություն տվեցի ես, և պարապմունքն ամփոփելու համար ավելացրի.— Վլադիմիր Իլյիչն այդ զինված ապստամբությունը համարում էր անմոռանալի հերոսական սխրագործություն, լավ օրինակ՝ Ռուսաստանի բոլոր աշխատավորների և միջազգային պրոլետարիատի համար։

Դեկտեմբերյան զինված ապստամբությունը ժողովրդի մարտական մկրտությունն էր, ժողովուրդ, որը պատրաստեց այն մարտիկների շարքերը, որոնք 1917 թվականին հաղթեցին և այժմ պաշտպանում են սոցիալիզմի համաշխարհային հաղթանակի գործը։

Լենինն իր հոդվածը վերջացնում է հետևյալ խոսքերով. «Կեցցե՛ն Կարմիր Պրեսնյայի բանվորները՝ համաշխարհային բանվորական ռևոլյուցիայի առաջավոր ջոկատը»։

Պյոտր Կուզմիչը բազմանշանակ հազաց և նստած տեղը իրեն ուղղեց։ Բոլորի հիացական հայացքներն ուղղված էին դեպի նա...

Արդեն մթնել էր, որ պարապմունքը վերջացավ։ Բայց մի՞թե Մոսկվան մթնում է։ Գիշերը Մոսկվան ողողված է էլեկտրական լույսերի մեջ։ Դուրս գալով փողոց, ասես մտնում ես սյունազարդ, հրաշակերտ մի սրահ։



# Ձնհալ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Առավոտյան գյուղից դուրս եկան Վարդանիկը, Տիգրանիկն ու Գուրգենը։

Նրանց գյուղը՝ Հովանիատը, գտնվում է Արագածի փեշին։

Գարունը բացվելուն պես սկսում է հալչել Արագածի լանջերի ձյունը, բայց ոչ միայն գարնան, այլև ամառվա արևի ճառագայթներն էլ անզոր են ձնհալքը մինչև գագաթը հասցնել։ Արևի տաք ճառագայթները տեղ-տեղ խորացնում են ձյունը, ձգտում են հասնել գագաթին, տեսնել լեռան մերկ գագաթները, բայց իզուր. Արագածի գագաթները միշտ ձյունածածկ են։

Ամբողջ ամառվա ընթացքում դանդաղ հալվում, ցած են իջնում Արագածի գագաթին նստած

հավերժական ձյան փեշերը, և մինչև խոր աշուն լեռան լանջերը ծածկված են մնում ծաղիկներով ու խոտերով։

Տղաները սիրում էին հորթերին տանել Ջեյրոտ քարի մոտ, այն հսկա, ապառաժ քարի, որը անձրևներից ու կարկուտներից ծեծկվել, ջրերից ու քամիներից ծակծկվել ու կուչ էր եկել լեռան ստորոտում։ Ջեյրոտ քարի փեշերը ողողելով հոսում էր մի փոքրիկ գետակ։

Հորթերն սկսում էին արածել գետափի կանաչ խոտերի մեջ։ Վարդանիկը մնում էր հորթերի մոտ, իսկ Տիգրանիկն ու Գուրգենը գնում էին լող անելու։

Արևի տակ փայլփլում էին կապուտակ ջրի կոհակները, որոնք լիզում էին ճեղքված լեռան պատերը և մանրիկ կտորներ պոկելով տանում իրենց հետ։

Վարդանիկը նստում էր գետափին ու, ասես ամեն ինչ մոռացած, խաղում գույնզգույն քարերի հետ, ապա ընտրում ամենագեղեցիկներն ու գրպանները լցնում։

Կեսօրին տղաները լողանում էին գետակում, իսկ երբ արևը թեքվում էր մայրամուտ, նրանք տուն էին վերադառնում։



Դպրոցի բակը լեփ լեցուն էր։ Աշակերտները վերադարձել էին ամառային արձակուրդներից։

Նորից հարազատ դպրոցում, սիրելի ուսուցիչների հետ, նոր դասարան, նոր առարկաներ...

Բակի մի անկյունում հավաքվել էին վեցերորդ դասարանցիները։ Տիգրանիկը հպարտությամբ ցույց էր տալիս վանդակի մեջ կուչ եկած լորիկին, մի քանիսը խմբվել էին Թորգոմի շուրջը և նայում նրա բռնած վայրի ճագարին։ Վարդանիկը հետաքրքրությամբ դիտում էր Քնարիկի ընդհանուր տետրը, որի մեջ խնամքով չորացրած ու կարված էին քսան տեսակ ծաղիկ։

— Իսկ դու ի՞նչ ես բերել,— Վարդանիկի ձեռքից տետրը վերցնելով, հարցրեց Քնարիկը։

Տղաները ծիծաղեցին։

— Մի՞թե չգիտես,— ասաց Տիգրանիկը,— քարե՜ր...

Վարդանիկը կարմրեց և ձայն չհանեց։ Նա չէր հասկանում, թե ինչու Տիգրանիկն ու Գուրգենը քարեր չեն սիրում և միշտ ծիծաղում են իր վրա։

Նոր բնագիտության դասատու ընկեր Արամյանը դասավորում էր երեխաների բերած նվերները, ամենից շատ հավանեց Վարդանիկի կազմած քարերի կոլեկցիան։

Դասերը պատրաստելուց հետո, Վարդանիկը նորից Ջեյրոտ քարի մոտ էր գնում։

Գորշ քարերի արանքներից ժպտում էին վայրի վարդի թփերը, վառ կարմիր պտուղներով մասրենիները։ Վարդանիկը մագլցում էր լեռները, բրիչով փորփրում, փոքրիկ սղոցով կտրատում և տուն էր տանում տարբեր տեսակի քարեր։



Ժայռից կախված էր Վարդանիկը։

Մի օր երեկոյան Վարդանիկի մայրը մենակ վերադառնում էր դաշտից։

Մայր մտնող արևի դեղնակարմիր ճառագայթները դուրս էին սփռվել բզկտված ամպի տակից և լուսավորել սարերի գագաթները։ Տարված վերջալույսի գեղեցկությամբ Զարուհին չնկատեց, թե ինչպես հասավ ձորաբերանի ժայռին։ Բայց հանկարծ նրա մտքերը խառնվեցին, կարծես շուրջը միանգամից մթնեց. հսկա ժայռից ինչ-որ բան էր կախված։ Զարուհին վախկոտ չէր, բայց ոտքերն սկսեցին դողալ։ Նա դանդաղ, դողալով մոտեցավ ձորին, ուշադիր նայեց ու ճչաց։

Ժայռից կախված էր Վարդանիկը։

Նա իսկույն տեսավ մորն ու բղավեց.

— Մի՛ վախենա, մայրի՛կ, մեջքիցս պարան կա կապած։

Ժայռի վրա երևացին Տիգրանիկն ու Գուրգենը։

Զարուհու սիրտը դեռ անհանգիստ խփում էր։ Տղաները քաշեցին պարանի ծայրը. Վարդանիկն

արագ քանդեց մեջքի պարանը, իջավ ցած ու վազելով մոտեցավ մորը։ Տղաներն էլ վազեցին նրա հետևից։

— Իսկ եթե հանկարծ ընկնեի՞ր...— ցածր, դողդոջուն ձայնով ասաց Զարուհին, ու կարծես չցանկանալով Վարդանիկի պատասխանը լսել, սկսեց քայլել։

Վարդանիկը զգում էր, որ մայրը շատ է վախեցել, դրա համար կշտամբում էր ինքն իրեն։ Նա ցանկանում էր, որ մայրը խոսի, բարկանա իր վրա, բայց Զարուհին լուռ էր, և այդ լռությունը ճնշում, խեղդում էր Վարդանիկին։ Նա ցանկանում էր խզել լռությունը, ներողություն խնդրել, որ առանց նրան հարցնելու էր բարձրացել, բայց չէր կարողանում, աչքի տակով նայում էր մորը և կախում գլուխը։ Այդպես էլ նրանք տուն հասան։

Լավ էր, որ հաջորդ օրվա դասերն արդեն պատրաստել էր։ Վարդանիկը գրքերն հավաքեց պայուսակի մեջ ու պառկեց։ «Ա՜խ, երևի շատ վախեցավ մայրիկս, խեղճ մայրիկ, բայց ի՞նչ էի անում որ... չէ՞ որ այդ քարը...», մտածում էր նա։

Վարդանիկի ուշադրությունը վաղուց էր գրավել արևի ճառագայթների տակ օրվա տարբեր ժամերին, տարբեր գույնի փայլ ունեցող այդ քարակտորը։ Նա շատ էր ցանկացել, լեռան ծերպից պոկել, բայց դժվար էր։ Վերջապես նա կարողա-



—...իսկ որտեղից ես գտել այս քարը։

ցել էր համոզել Գուրգենին ու Տիգրանիկին, որ օգնեին իրեն. տղաները չէին մերժել, և այդ քարն արդեն իրենն էր։

«Ինչո՞ւ մայրիկից թույլտվություն չխնդրեցի, ինչո՞ւ մայրիկին նախօրոք չասացի», անկողնում պառկած ինքն իրեն ասում էր Վարդանիկը։ Երբ ճաշի ամանը ձեռքին մայրը ներս մտավ, Վարդանիկն արդեն քնած էր։ Զարուհին ցանկացավ արթնացնել նրան, որ հաց ուտի, բայց չարթնացրեց։ Նրա սիրտը նորից ճմլվեց, սենյակի օդը թվաց ծանր ու խեղդուկ։ Նա մոտեցավ պատուհանին, որ բաց անի, պատուհանի գոգին տեսավ թեյի բաժակի մեծության մի փայլփլուն քար։

— Այո, սա այն քարն է, որի համար նա կախվել էր ժայռից։

Մի պահ Զարուհու աչքի առաջ նորից պատկերացավ հսկա ժայռը, ծերպից կպած Վարդանիկը, ապա այն անդնդախոր ձորը, որ ձգվում էր այդ ժայռի տակ։ Ու մի րոպե նրան թվաց, թե ահա, պարանը կտրվեց, ու վերջ...

Հանկարծ նա սթափվեց ու սարսափով հետ քաշվեց։ Մի անգամ էլ նայեց քարին ու բաց պատուհանից դուրս գցեց։ «Ես չեմ կարող անտարբեր նայել այդ քարին, այդ քարն ինձ վատ բան է հիշեցնում», շշնջաց Զարուհին ու հեռացավ պատուհանի մոտից։ Նա էլ պառկեց և աշխատեց, որքան կարելի է շուտ քնել, ոչինչ չհիշել...

Առավոտյան Վարդանիկը ուշ արթնացավ։ Նա արագ լվացվեց, սանրվեց, սեղանի վրա դրված հացն ու պանիրը դրեց պայուսակի մեջ և շտապեց դպրոց։

Այդ օրը դասերի ժամանակ Վարդանիկը շատ անհանգիստ էր։ Դասերն էլ այնպես դանդա՜ղ էին անցնում։ Դպրոցից տուն վերադառնալուն պես, Վարդանիկը շատ փնտրեց, բայց քարը չգտավ... Հարցրեց տատիկին։

— Չեմ տեսել, Վարդանիկ ջան, ես եմ մաքրել սենյակը, բայց քար չեմ տեսել։

Երեկոյան դաշտից տուն եկավ մայրիկը։

Վարդանիկն ուզում էր հարցնել քարի մասին, բայց ամաչում էր։

Վերջապես Զարուհին ասաց.

— Ինչո՞ւ ես տխրել Վարդանիկ, քարի՞ համար, թե նրա համար, որ ես նեղացել եմ քեզանից։

Վարդանիկը մի պահ մոլորվեց, ապա մորը դառնալով ասաց.

— Երկուսի համար էլ, մայրիկ։

— Դե որ այդպես է, վերցրու քարը, դրված է պահարանում։ Դուրս էի գցել, բայց առավոտյան վերցրի, գիտեի, որ շատ կտխրեիր։ Առանց մեծերի չի կարելի այդպիսի հանդուգն քայլ անել։ Դու կարող էիր այդ քարի մասին հայտնել ձեր ավագ ջոկատավարին, ուսուցիչներին. նրանց օգնությամբ, նրանց միջոցով պոկել և ոչ թե ինքնագլուխ բարձրանալ լեռան ծերպերը։

Հաջորդ օրը դպրոցում բոլորը խոսում էին

Վարդանիկի տարած քարի մասին։ Դիտում էին քարն արևի տակ, քարն անցնում էր ձեռքից-ձեռք։ Այդ մասին իմացավ նաև դպրոցի դիրեկտոր ընկեր Սիմոնյանը, բայց դպրոցում ոչ ոք չգիտեր, թե ինչ քար էր այդ արտասովոր, գեղեցիկ լեռնատեսակը։

Եվ նրանք քարն ուղարկեցին Երևանի գիտահետազոտական ինստիտուտ։ Մի շաբաթ անց ստացվեց պատասխանը.

«...Ձեր ուղարկած քարը կոչվում է յաշմա։ Շուտով մենք կգանք ձեզ մոտ»։

Լուրն արագ կերպով տարածվեց դասարաններում, բոլորը հետաքրքրվում էին։



— Ձյո՜ւն, ձյո՜ւն, ձյուն է գալիս, ձյո՜ւն... մոտենալով լուսամուտին գոչեցին վեցերորդ դասարանցիները։

— Ընկեր միչուրինական,— ասաց Գուրգենը Քնարիկին,— դու ամեն տարի քո օրագրում նշում ես, թե երբ է եկել առաջին ձյունը, դե գրիր...

Երբ դասերը վերջացան ու երեխաները դուրս եկան, գետինն արդեն սպիտակել էր։

— Էլ չեն գա,— Վարդանիկի կողմը դառնալով ասաց Տիգրանիկը։

— Կարող է գան, ի՞նչ կա որ,— ասաց Գուրգենը։

— Ահա ձյունն եկավ և ամեն ինչ ծածկեց, որ գան ի՞նչ պիտի տեսնեն,— նորից հաստատեց Տիգրանիկը։

Վարդանիկը լուռ էր։ Նա հայացքը գցել էր հեռուները. ամբողջ դաշտը սպիտակել էր, իսկ այն լեռը տեղ-տեղ դեռ սևին էր տալիս...

«Բայց ի՞նչ օգուտ, դեռ շարունակում է ձյուն գալ, գիշերն էլ կգա ու ամեն ինչ կծածկի», մտածեց նա ու քայլերն արագացրեց։

Հաջորդ օրը դասերից հետո Վարդանիկին կանչեցին ուսուցչանոց։ «Ինչո՞ւ են կանչել», մտածեց նա ու կամաց բաց անելով ուսուցչանոցի դուռը ներս մտավ։

Ուսուցչանոցում անծանոթ մարդիկ կային։

— Ահա և մեր Վարդանիկը,— ցույց տալով նրան ասաց բնագիտության դասատու ընկեր Արամյանը։ Նա շատ է հետաքրքրվում քարերով, ամեն տարի հիանալի կոլեկցիաներ է կազմում։ Ոչ միայն մեր գյուղի ու շրջապատի քարերից, այլև նա նամակագրությամբ անցյալ տարի քարեր է ստացել մեր երկրի զանազան ծայրամասերի պիոներներից,— ու նրանց ցույց տվեց քարերի մի քանի կոլեկցիաներ։

— Լավ է, շատ լավ է,— իսկ որտեղի՞ց ես գտել այս քարը,— ձեռքը Վարդանիկի ուսին դնելով ասաց անծանոթ մարդը։

Ուսուցիչները շրջապատեցին նրանց։

— Մեր գյուղի ծայրին մի լեռ կա, այնտեղից,— կարմրելով ու ամաչելով ասաց Վարդանիկը։

— Սա յաշմա է,— ցույց տալով ուղարկած քարը ասաց նա,— մենք ձեզ գրել ենք։ Այս լեռնատեսակը հայտնի է ոչ միայն իր արտակարգ գեղեցկությամբ, այլև հիանալի շինանյութ է։ Տեսնում եք ինչքան գեղեցիկ է. կան և սրանից գեղեցիկները. յաշմայի մեջ բացի մաքուր կապույտից, լինում են բոլոր գույները։ Եվ հաճախ գույները ոչ թե այսպես, գույնզգույն ժապավենների նման են դասավորվում, այլ միահյուսվում են և ստացվում են նախշեր։ Լավ կլինի, եթե Վարդանիկի գտած յաշման ունենա իր արմատները...

— Վարդանիկ, այժմ գնանք մեզ ցույց տուր այդ լեռը,— վերջում ասաց նա։

— Իսկ այս ձյունը...— հազիվ լսելի ձայնով ասաց Վարդանիկը։

— Դա ոչինչ,— ձյունը մեզ չի խանգարի,— ժպտաց ակնոցավոր մարդը։

Քիչ հետո գիտնականների հետ Վարդանիկը բարձրանում էր իր սիրած լեռը...

## ՊԱՏԿԵՐ

*Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

Սառերը մերկ
Քամու դիմաց
Դողդողում են
Շարունակ,
Ձյուն է գալիս
Կամաց-կամաց,

Գետն է մտել
Սառցի տակ։

Ճերմակ ձյունը
Փաթիլ-փաթիլ
Նախշում է բակ
Ու տանիք,
Մանուկները
Խաղ են անում...

Ա՜խ, ինչ լա՜վ է,
Գեղեցի՜կ։

# ՉԻՊՈԼԻՆՈՅԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Ջ. ՌՈԴԱՐԻ

Նկ. Վ. ՍՈՒՏԵԵՎԻ

**Իտալական Ֆերրարա քաղաքի քաղաքագլուխը, որը մի կոմունիստ կին է, մի անգամ աղքատների երեխաներին նվերների ծանրոցներ ուղարկեց: Այդ ծանրոցների մեջ նա մեկական օրինակ մանկական ոտանավորների գրքույկ էր դրել: Այդ մասին իմանալով, բուրժուական թերթերը հարձակվեցին քաղաքագլխի վրա: Նրանք ասում էին, թե այդ ոտանավորները «հակադաստիարակչական» են, որովհետև անհնազանդություն են սովորեցնում: Եվ իրոք, գրքույկը սովորեցնում էր ատել, բայց ո՞ւմ՝ պատերազմի հրձիգներին, բոլոր տեսակի խաբեբաներին ու ավազակներին:**

**Այդ գրքույկի հեղինակը իտալացի բանաստեղծ Ջաննի Ռոդարին էր: Նրա ոտանավորներից մի քանիսը դուք կարդացել եք մեր ամսագրի էջերում: Այդ ոտանավորների ժողովածուն շուտով լույս կտեսնի «Բարև՛, երեխաներ» խորագրով:**

**Շուտով Հայպետհրատը լույս կընծայի նաև Ջաննի Ռոդարիի «Չիպոլինոյի արկածները» վիպակը:**

**Այս գրքի հերոսները տարօրինակ անուններ ունեն: Չիպոլինո իտալերեն նշանակում է փոքրիկ սոխի գլուխ: Եվ ահա վիպակում պատմվում է, թե ինչպես փոքրիկ սոխի գլուխը իր բարեկամների՝ վարպետ Խաղողի, քավոր Դդումի, պրոֆեսոր Տանձի, Բողկի, Բալուկի, ծերուկ Խլուրդի և մյուսների հետ կռվի բռնվեց իշխան Լիմոնի, ասպետ Պամիդորի ու նրանց կողմնակիցների դեմ և հաղթանակի հասավ: Այդ օրվանից էլ աղքատների երեխաները սկսեցին դպրոց հաճախել, խաղալ նախկինում իշխաններին ու կոմսերին պատկանող այգիներում, որտեղ նրանց համար տիկնիկային թատրոն, կինո, պինգ-պոնգ և ուրիշ շատ խաղեր կան:**

**«Ճիշտ է, աշխարհում իշխան Լիմոնից ու սինյոր Պամիդորից բացի դեռ ուրիշ ձրիակերներ էլ կան, բայց նրանց էլ մի օր կքշեն, և նրանց այգիներում էլ երեխաները կխաղան:**

**Թող այդպե՛ս լինի»:**

**Այսպես է ավարտվում «Չիպոլինոյի արկածները» գիրքը, որտեղ այնքա՜ն հետաքրքրաշարժ արկածներ կան: Տպագրում ենք «Չիպոլինոյի արկածները» գրքից մի գլուխ:**

## ՓՂԻ, ՈՐԻ ԼԵԶՈՒՆ ՉԱՓԻՑ ԴՈՒՐՍ ԵՐԿԱՐ Է



*Կենդանաբանական այգում խորը լռություն էր տիրում: Պահակը բարձի տեղ Փղի կնճիթը գլխի տակ դրած, քնել էր փղանոցում: Նա շատ խորն էր քնել, դրա համար էլ, երբ Չիպոլինոն ու Արջը փղանոցի դուռը կամաց ծեծեցին, չարթնացավ:*

*Փիղը պահակի գլուխն զգուշորեն դրեց ծղոտի վրա և առանց տեղից շարժվելու կնճիթը երկարացրեց ու դուռը բացեց:*

*— Ներս մտեք,— փնթփնթաց նա:*

*Մեր երկու բարեկամները շուրջը նայելով ներս մտան:*

*— Բարի երեկո, սինյոր Փիղ,— ասաց Չիպոլինոն,— ներեցեք, որ մենք ձեզ այս ուշ ժամին անհանգստացրեցինք:*

*— Օ՜, ոչի՛նչ, ոչի՛նչ,— պատասխանեց Փիղը:*

*— Ես դեռ չէի քնել: Ես փորձում էի գուշակել, թե իմ պահակն ի՞նչ է տեսնում երազում: Երազների միջոցով կարելի է իմանալ, թե մարդն ինչ մարդ է:*

*Փիղը հնդկական ծեր փիլիսոփա էր և միշտ նրա գլխում տարօրինակ մտքեր էին ծագում:*

*— Մենք գիտենք, թե դուք ինչքան իմաստուն եք,— շարունակեց Չիպոլինոն,— դրա համար էլ ձեզանից օգնություն ենք խնդրում: Չէի՞ք կարող խորհուրդ տալ, թե ինչպես գերությունից ազատենք իմ բարեկամ Արջի ծնողներին:*

*— Ինչ կա որ,— մտածկոտ մրթմրթաց ծեր Փիղը,— արջանոցի բանալին գտնվում է, ա՛յ, այս քնած մարդու, իմ պահակի գրպանում: Ես կաշխատեմ առանց նրան արթնացնելու բանալին հանել: Նա շատ պինդ է քնում, կարծում եմ, որ ոչինչ չի զգա:*

*Ճիշտ ասած, Չիպոլինոն և Արջը շատ էին կասկածում, թե այդ բարդ գործը գլուխ կգա, բայց Փիղն իր ճկուն ու հնազանդ կնճիթով այնքան զգույշ ու ճարպկորեն էր գործում, որ պահակն իրոք ոչինչ չզգաց:*

*— Ահա ձեզ բանալիները,— կնճիթի ծայրը պահակի գրպանից հանելով ասաց Փիղը,— միայն թե չմոռանաք ետ վերադարձնել:*

— Հանգիստ եղեք,— ասաց Չիպոլինոն,— և ընդունեցեք մեր անկեղծ շնորհակալությունը։ Իսկ դուք չէի՞ք ուզենա մեզ հետ փախչել։

— Եթե ես երբևիցե ուզենայի փախչել, ապա չէի սպասի ձեզ և ձեր օգնությանը։ Դե, հաջողություն եմ ցանկանում։

Եվ պահակի գլուխը նորից դնելով կնճիթի վրա, սկսեց նրան օրորել, որպեսզի իր բանտապետը ավելի խորը քնի և ժամանակից շուտ չարթնանա։

Չիպոլինոն և Արջը փղանոցից դուրս սողացին և գնացին դեպի այն վանդակը, որտեղ արջերն էին ապրում։ Նրանք աշխատում էին որքան կարելի է զգույշ քայլել, բայց դեռ մի քանի քայլ չէին արել, երբ ինչ-որ մեկը նրանց կանչեց.

— Էյ, է՜յ, սինյո՛ր։

— Սը՜սս...— վախեցած շշնջաց Չիպոլինոն,— այդ ո՞վ է ինձ կանչում։

— Սը՜սս... այդ ո՞վ է ինձ կանչում,— կրկնեց անծանոթ խզված ձայնը։

— Դե, մի՛ աղմկիր, պահակը կարթնանա։

Ձայնը նորից կրկնեց.

— Դե, մի պակաիր, աղմուկը կարթնանա... Ա՜խ, ես հիմար եմ, հիմար, ամեն ինչ խառնեցի։

— Աա՜, սա հո Թութակն է,— շշնջաց Չիպոլինոն Արջին։— Նա ինչ որ լսում՝ կրկնում է։ Բայց քանի որ նա իր լսածը չի հասկանում, դրա համար էլ հաճախ շուռ տված է խոսում։ Բայց նա բարի տղա է և ոչ ոքի վատը չի ցանկանում։

Արջը քաղաքավարի գլուխ տվեց Թութակին ու հարցրեց.

— Սինյոր Թութակ, չէի՞ք ասի, թե որտեղ է գտնվում արջերի վանդակը։

Թութակը կրկնեց.

— Սինյոր Արջ, չէի՞ք ասի, թե որտեղ է գտնըվում Թութակների վանդակը։ Ա՜խ, ես հիմար եմ, հիմար, նորից խառնեցի։

Տեսնելով, որ Թութակից կարգին բան չեն հասկանա, Չիպոլինոն ու Արջը կամաց հեռացան։ Ճաղերի հետևից նրանց ձայն տվեց մի կապիկ.

— Լսեցեք, սինյո՛ր, լսեցեք...։

— Մենք ժամանակ չունենք,— ասաց Արջը,— մենք շատ ենք շտապում։

— Մի րոպե միայն ինձ լսեցեք. ահա արդեն երկու օր է, որ ես ուզում եմ այս ընկույզը ջարդել, բայց չի հաջողվում։ Խնդրում եմ, օգնեցեք ինձ։

— Մի քիչ սպասեք, ետ դառնալիս կօգնենք ձեզ,— ասաց Չիպոլինոն։

— Է՜խ, դուք այդպես ասում եք միայն,— գլուխը շարժելով ասաց Կապիկը,— ասենք ես հենց այնպես, խոսքի համար ասացի. ինչի՞ս է պետք այս ընկույզը, և ընդհանրապես աշխարհի բոլոր ընկույզները։ Ես կուզենայի նորից իմ հարազատ անտառում լինել, թռչել ծառից-ծառ և կոկոսի ընկույզով խփել մի որևէ անբան ճանապարհորդի գլխին։ Էլ ինչի՞ համար են կոկոսի ընկույզներն աճում, որ նրանցով մարդու գլխին չխփեն։ Ես ձեզ եմ հարցնում, էլ ինչի՞ համար են ճանապարհորդները, եթե մեկը չկա, որ նրանց գլխին կոկոսի ընկույզով խփի։ Ես արդեն չեմ հիշում, թե վերջին անգամ այն ե՞րբ էր, որ ես կո-



Պահակը բարձի տեղ Փղի կնճիթը գլխի տակ դրած, քնել էր...

կոսի ընկույզով հասցրեցի մի անծանոթ եկվորի սափրված կարմիր գլխին... Այնքա՜ն հաճելի էր նրա մերկ գագաթին նշան բռնելը։ Ես հիշում եմ, թե...

Բայց Չիպոլինոն և Արջը արդեն հեռու էին և նրա շաղակրատանքը չէին լսում։

— Կապիկները,— ասաց Չիպոլինոն,— շատ թեթևամիտ և հիմար արարածներ են։ Նրանք սկըսում են խոսել մեկ այս մասին, մեկ այն և երբեք չես կարող ասել, թե ինչով կվերջանա նրանց շաղակրատանքը։ Չնայած դրան, ես անկեղծորեն ցավում եմ այդ խեղճի համար։ Ինչո՞ւ նա չի քնում, կարծում ես նրա համար, որ չի՞ կարողանում ընկույզը ջարդել։ Ոչ, նա չի քնում, որովհետև կարոտել է իր հեռավոր հարավին, տաք արևին, կոկոսի ծառերին և բանաններին։

Առյուծը նույնպես քնած չէր։ Նա աչքի տակով նայեց Ջիպոլինոյին ու Արջին, բայց անգամ գլուխը չշարժեց, որ տեսնի, թե նրանք ուր են գնում։ Նա շատ ազնիվ ու հպարտ գազան էր և նրան բոլորովին չէր հետաքրքրում, թե ով, կամ ինչ գործով է անցնում իր վանդակի մոտով։

Վերջապես Ջիպոլինոն և Արջը հասան արջերի վանդակին։

Խեղճ պառավներն իսկույն ճանաչեցին իրենց բրդոտ տղային և թաթերը մեկնելով, սկսեցին ճաղերի արանքից համբուրել նրան։

Մինչ նրանք համբուրվում էին, Ջիպոլինոն վանդակի դուռը բացեց և ասաց.

— Հերիք է լաց լինեք։ Ձեր վանդակի դուռը բաց է, և եթե դուք հիմա չօգտվեք այդ հնարավորությունից, պահակը կարթնանա և ազատություն այլևս չեք տեսնի։

Երբ վերջապես գերիները դուրս եկան վանդակից, նորից նետվեցին դեպի իրենց ծուռթաթ տղայի վրա և գրկեցին նրան։ Նրանց բրդոտ այտերի վրայով արցունքի խոշոր կաթիլներ էին թափվում։

Ջիպոլինոն մինչև հոգու խորքը հուզվեց։

«Խեղճ հայրիկ, —մտածում էր նա,— այն օրը երբ ինձ հաջողվի քո բանտի դռները բացել, ես էլ քեզ անընդհատ կհամբուրեմ»։

— Ժամանակն է, գնալու ժամանակն է,— ցածր, բայց լսելի ձայնով ասաց նա արջերին։— Մեզ ուշանալ չի կարելի։

Բայց պառավներն ուզում էին հրաժեշտ տալ սպիտակ արջերի ընտանիքին, որ ապրում էին ավազանի մոտ։ Հետո տեսնել Ընձուղտին, որն այդ ժամանակ պինդ քնած էր։ Մյուս գազաններն էլ էին քնած, բայց արջերի գնալու մասին շուտով իմացավ ամբողջ կենդանաբանական այգին. արթնացան նրա բոլոր բնակիչները։ Արջերին շատ էին սիրում։ Անշուշտ, նրանք էլ թշնամիներ ունեին։ Օրինակ, նրանց տանել չէր կարողանում Փոկը, որը արջերին սպիտակ արջերի մոտիկ ազգակիցներն էր համարում։

Իմանալով, որ արջերը վանդակից փախել են, Փոկն այնքան բարձր սկսեց ճչալ, որ արթնացրեց խորը քնած պահակին։

— Ի՞նչ է պատահել,— հորանջելով հարցրեց նա Փոկին։

— Ճիշտ ասած, չգիտեմ,— մտածկոտ պատասխանեց ծեր իմաստունը։— Եվ ի՞նչ կարող է պատահել։ Աշխարհում այլևս ոչ մի նոր բան չի տեղի ունենում, ուրեմն այս գիշեր ևս ոչ մի նոր բան չի պատահել։ Միայն կինոյում է ամեն տաս րոպեին մի նոր բան պատահում։

— Գուցե և դու ճիշտ ես,— համաձայնեց պահակը,— բայց էլի պետք է նայել։

Հենց որ նա փղանոցից դուրս եկավ, հանդիպեց փախստականներին։

— Օգնեցե՜ք, օգնության հասե՜ք,— ճչաց նա։

Նրա բոլոր օգնականներն արթնացան, և մի քանի րոպեում ամբողջ կենդանաբանական այգին շրջապատեցին։ Փախուստն անհնարին դարձավ։

Ջիպոլինոն և երեք արջերը նետվեցին ավազանի մեջ և գլուխները դուրս հանելով ջրից, թաքնվեցին այնտեղ։ Դժբախտաբար նրանք ընկել էին այն ավազանը, որտեղ ապրում էր Փոկը։




...Նրանք ընկել էին այն ավազանը, որտեղ ապրում էր Փոկը:

— Հի՜, հի՜, հի՜,— նրանց հետևից լսվեց ինչոր մեկի չարագուշակ ծիծաղը։

Դա հենց ինքը՝ Փոկն էր։

— Հույս ունեմ, որ սինյորներն ինձ թույլ կտան մի փոքր ծիծաղեմ. այսօր ես շատ լավ տրամադրության մեջ եմ։

— Սինյոր Փոկ,— ցրտից դողալով՝ խնդրեց Ջիպոլինոն,— ես հասկանում եմ ձեզ, բայց մի՞թե դուք կարող եք ծիծաղել մեզ վրա այն ժամանակ, երբ մեզ փնտրում են։

— Այ, հենց այդ էլ ինձ ուրախացնում է։ Ես հիմա կկանչեմ պահակին և կխնդրեմ, որ ձեզ ավազանից դուրս քաշեն։ Չէ՞ որ դուք ջրային կենդանիներ չեք։

Եվ Փոկն, իրոք գնաց դեպի ավազանի մյուս ափը՝ պահակին ու նրա օգնականներին կանչելու։

Արջերին իսկույն դուրս հանեցին և այն էլ ոչ

*թե երկուսին, այլ երեքին։ Դա պահակին շատ զարմացրեց։ Բայց նա ավելի շատ զարմացավ, երբ արջերի մեջ նկատեց անհայտ ցեղի մի ինչ-որ արարածի, որը սակայն մարդկային լեզվով սկսեց խոսել.*

*— Սինյոր Պահակ, ինչպես տեսնում եք, սա բացարձակ թյուրիմացություն է։ Ես արջ չեմ։*

*— Ես էլ եմ այդ տեսնում, բայց դու ի՞նչ էիր անում ավազանում։*

*— Լողանում էի։*

*— Այդ դեպքում ես քեզ կտուգանեմ, որովհետև հասարակական վայրերում լողանալը խստիվ արգելվում է։*

*— Ինձ մոտ փող չկա, բայց եթե այնքան սիրալիր կլինեք...*

*— Ես բոլորովին էլ սիրալիր չեմ, և քանի դեռ դու տուգանքը չես վճարել, կապիկների հետ կնըստես վանդակում։ Գիշերն այնտեղ կանցկացնես, իսկ առավոտյան կտեսնենք, թե ինչ կանենք։*

*Կապիկը հյուրին հրճվանքով ընդունեց, և դեռ Չիպոլինոն ուշքի չէր եկել, նա սկսեց առաջվա նման անկապ ու խառնաշփոթ շաղակրատել։*

*— Ես ձեզ պատմում էի կարմիր և սափրված գլխով ճանապարհորդի մասին,—վանդակի տանիքի ճաղերից պոչով կախված, օրորվելով սկսեց խոսել նա,— եթե ես ասում եմ, որ նրա գլուխը կարմիր էր և սափրված, ուրեմն այդպես էլ եղել է։ Ես երբեք չեմ ստում, ավելի ճիշտ՝ ստում եմ միայն ծայրահեղ դեպքում։ Սակայն գիտե՞ք, ես երբեմն սիրում եմ սուտ ասել։ Այո, այո... ստելու մեջ ինչ-որ հատուկ հաճելի համ կա... երբեմն...*

*— Լսեցեք,— խնդրեց նրան Չիպոլինոն,— չէի՞ք կարող ձեր խոստովանությունը հետաձգել մինչև վաղը առավոտյան։ Ես շատ եմ ուզում քնել։*

*— Ցույց ձեզ օրո՞ր ասեմ,— առաջարկեց կապիկը,— նանի՜, նանի՜։*

*— Ոչ, շնորհակալ եմ։ Առանց դրան էլ ես կքնեմ։*

*— Ուզո՞ւմ եք ձեզ վերմակով ծածկեմ։*

*— Բայց այստեղ վերմակ չկա։*

*— Իհարկե՝ չկա,— փնթփնթաց կապիկը։— Ես քաղաքավարության համար առաջարկեցի, բայց եթե դուք ուզում եք, որ ես անքաղաքավարի լինեմ՝ խնդրեմ, ես դեմ չեմ։*

*Այս ասելով վիրավորված կապիկը երեսը նրանից դարձրեց և լռեց։ Չիպոլինոն, ինչ խոսք, լռությունից իսկույն օգտվեց ու քնեց։ Կապիկն իզուր էր սպասում, թե Չիպոլինոն կխնդրի նրան, որ իր կողմը նայի։ Տեսնելով, որ բան դուրս չի գալիս, նա որոշեց զայրանալու փոխարեն, ներողամիտ լինել և նորից խոսել տղայի հետ։ Սակայն երբ նա ետ դարձավ, Չիպոլինոն արդեն քնած էր։*

*Կապիկն ավելի վիրավորվեց և մի անկյունում կուչ գալով, սկսեց նայել քնածին։*

*Կապիկների վանդակում Չիպոլինոն ամբողջ երկու օր մնաց։ Մայրերի ու դայակների հետ կենդանաբանական այգի եկած երեխաները հիանում էին։ Նրանք դեռևս չէին տեսել, որ կապիկը իրենց նման հագնվի։*

*Միայն երրորդ օրը կապիկի ձեռքին տանջված Չիպոլինոյին հաջողվեց Բալուկին գրությամ ուղարկել։ Սա հենց առաջին գնացքով քաղաք եկավ, Չիպոլինոյի համար տուգանք վճարեց և գերությունից ազատեց նրան։*

*Փողերն հաշվելով, պահակը ջերմորեն հրաժեշտ տվեց իր բանտարկյալին և նույնիսկ առաջարկեց, որ սա հաճախ գա կենդանաբանական այգի։*

*— Լավ, լավ,— պատասխանեց Չիպոլինոն և շտապեց, որ գնացքին հասնի։*

*Ճանապարհին նա Բալուկին նախ և առաջ հարց ու փորձ արեց իր բարեկամների մասին և նրանց անհայտացման մասին իմանալով, շատ անհանգստացավ։*

*— Չեմ հասկանում,— ուսերը թոթվելով ասաց նա,— այդ ապաստարանում նրանք լիակատար անվտանգության մեջ էին։ Ի՞նչն է նրանց ստիպել, որ անձավից հեռանան։*

Թարգմ. Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



# ԻՄԱՍՏՈՒՆ ԱՅԳԵՊԱՆԸ

(Հայ ժողովրդական զրույց)

Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Մեծ աշխարհի թագավորը բազմած էր իր ոսկեղեն գահին, երբ նրա պալատը մտավ հեռու-հեռավոր երկրներից եկած մի վաճառական։ Սա յոթն անգամ գլուխ տվեց թագավորին, ծունր իջավ նրա առաջ ու ոտքերի տակ դրեց նաև մեծության մի թանկագին քար, որի նմանը թագավորն ու պալատականները չէին տեսել։*

*— Ո՛վ արքաների մեջ հզորագույնդ,— ասաց վաճառականը,— այս քարը միակն է հողագնդի վրա և վայր է ընկել արևից։ Ոչ մի իմաստուն չի կարող որոշել սրա գինը, սա բուժում է ամենածանր հիվանդներին ու գիշերները լույս է տալիս։ Մեծ ծովից այն կողմ ապրող մեր աշխարհի բարի սուլթանը այս քարը նվեր է ուղարկել քեզ, միայն մի փոքր պայման դնելով քո առաջ։*

*— Ասա՛, ով վաճառական, ո՞րն է քո սուլթանի պայմանը,— իր իմաստունների մեծ խելքին վստահ՝ համարձակ հարցրեց թագավորը։*

*— Եթե քո երկրում մեկն ու մեկը իմանա, թե այդ թանկագին քարը քանի՞ տարեկան է, ես կհեռանամ քո երկրից։ Յոթ օր ժամանակ եմ տալիս։ Այդ յոթ օրում եթե չիմացաք տարիքը, ես քարը կվերցնեմ, հետո էլ կտանեմ ձեր այն Հազարան բլբուլը, որ քո աշխարհի սիրելին է ու երգում է քո անմահական այգում։*

*Լսում է մեծ աշխարհի թագավորը և հրամայում կանչել իր երկրի հարավի ու հյուսիսի, արևելքի ու արևմուտքի իմաստուններին։*

*Գալիս են յոթանասուն ծեր ու յոթանասուն ջահել իմաստուններ՝ օտար սուլթանի ուղարկած քարի տարիքը որոշելու համար։ Նստում են իմաստուններն ու մտածում։ Բայց ոչ ոք չի կարողանում որոշել քարի տարիքը։*

*Այդ տեսնելով սաստիկ մռայլվում է թագավորը ու գլուխն ափերի մեջ առնելով՝ ծանր մտածմունքների մեջ ընկնում։ Պալատում լռում են երգերը, նվագածուները հեռանում են, մարդիկ սկսում են խոսել վախվխելով...*

*Պայման դրած յոթ օրն անցնում է ու մնում է մի ժամ։ Թագավորի աչքերը լցվում են արյունով, ու նա այնպես է գոռում իմաստունների վրա, որ սրանք տերևի պես թափվում են գետնին։ Ճար չի լինում. թագավորը հրամայում է բերել Հազարան բլբուլը։*

*Սարսափի մեջ ընկած պալատականները վազում են նրա հրամանը կատարելու, բայց ոչ ոք սիրտ չի անում թագավորի սիրած հավքը տանել և տալ օտար վաճառականին։ Բոլորը գիտեին, որ թագավորի բարկությունը կպայթի նրա վրա, ով վաճառականին կհանձնի Հազարան բլբուլը։ Թագավորի մեծ բարկությունից ու մահապատժից խուսափելու համար պալատականները խորհուրդ*



— ... բաց արա բերանը...

*են անում, կանչում ծեր այգեպանին, Հազարան բլբուլը տալիս նրան, թե տար տուր թագավորին, նա քեզ մեծագին նվերներ կտա։*

*Ծեր այգեպանը Հազարան բլբուլը տանում է պալատ, դնում թագավորի թևին ու հարցնում, թե թագավորն ի՞նչ է ուզում անել Հազարան բլբուլի հետ։ Թագավորը նայում է այգեպանին և պատմում օտար աշխարհի սուլթանի պայմանը։*

*Այգեպանը արքայի ոտքերի տակից վերցնում է*

թանկագին քարը, շուռումուռ տալիս ձեռքի մեջ և ասում.

— Ես կպատասխանեմ օտար սուլթանի հարցին, տեր արքա՛, և մեր Հազարան բլբուլը չենք տա ուրիշին։— Այս ասելուց հետո նա համարձակ մոտենում է օտար սուլթանի վաճառականին, քարը դեմ անում նրան ու քաղաքավարությամբ ասում.

— Ո՛վ մեծ սուլթանի վաճառական, ապրած կենաք՝ քո սուլթանն էլ, դու էլ։ Ընդունված ճշմարտություն է, որ ձիու, եզան, էշի, գոմեշի կամ մի ուրիշ ապրանքի տարիքը որոշելու համար մարդիկ բաց են անում նրա բերանն ու նայում ատամներին։ Առ քո ապրանքը, բաց արա բերանը, ես նայեմ ատամներին ու որոշեմ, թե քանի տարեկան է։

— Հաղթե՜ց...— գոչում է օտար աշխարհից եկած վաճառականը և գլուխ խոնարհելով իմաստուն այգեպանին՝ քարը դնում արքայի ոտքերի տակ ու հեռանում։

## ՄԱՅՐԱԿԱՆ ԽՈՍՔ

Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ

— Մայրի՛կ, ասա՛, մայրի՛կ,
Թե աստղ լինեի,
Աստղ թե լինեի ես երկնքում,
Երկնի անհունի մեջ
Ի՞նչպես ինձ կգտնեիր,
Ի՞նչպես կճանաչեիր դու քո որդուն։

— Տղա՛ս, ազնիվ եղիր,
Դու մարդ եղիր կյանքում,
Լույս տուր ու շողշողա
Ջինջ ու մաքուր,
Մայրդ հեշտ կգտնի
Քո տեղը աշխարհում
Միայն պայծառ լինես դու ամենուր...

## ՈՒՍՄԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ

ՍԻՄԱԿ ՍԱՀԱԿՅԱՆ

(Վաստակավոր ուսուցիչ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախագահ)

Ամեն անգամ, երբ խոսում են դպրոցի մասին, ես հիշում եմ անցյալը։ Դա ծանր մի ժամանակ էր դպրոցի համար։ Մեզ մոտ, Անդրկովկասում, դպրոցները ծառայում էին տիրող դասակարգի շահերին։ Այնտեղ աշխատավորների երեխաները սովորել չէին կարող, ամեն մեկին բախտ չէր վիճակվում տիրապետելու գիտության գաղտնիքներին։ Միայն սահմանափակ բախտավորներն էին դպրոց տեսնում, ճաշակում աշակերտ լինելու երջանկությունը, օգտվում ուսման իրավունքից։

Ցարը ռուսաց դպրոցներ էր բաց անում։ Այդ դպրոցների հիմնական նպատակը ռուսացման քաղաքականությունն էր։ Հայ, վրացի, ադրբեջանցի երեխաները պարտավոր էին սովորել մի լեզվով, որից ոչ մի բառ չէին հասկանում։ Շատ անգամ ուսուցիչներն էլ նշանակվում էին ռուսներ, որոնք այդ երեխաների մայրենի լեզուն չգիտեին։

Մյուս տիպի դպրոցներում երեխաներին կրթում էին այնպես, որ նրանք տիրողների՝ ցարի, բուրժուաների ու հոգևորականների հլու ծառաները լինեն։

Երբ մեր երկրում սովետական կարգերը հաղթանակեցին, փոխվեց նաև մեր դպրոցի դեմքը։ Բացվեցին բազմաթիվ տարրական, ոչ լրիվ ու լրիվ միջնակարգ դպրոցներ։ Ուսումը դարձավ ձրի, մատչելի բոլորի համար։ Աշխատավորների երեխաները կարող են ազատ սովորել մայրենի լեզվով։ Դպրոցներում մայրենի լեզվի հետ միասին սիրով սովորում են ռուս մեծ ժողովրդի լեզուն, որը դարձել է մեր ժողովուրդների բարեկամության կապող օղակը։

Դպրոց գնալը դարձել է պարտադիր բոլոր երեխաների համար։ Այժմ միջնակարգ կրթությունը պարտադիր է քաղաքի, իսկ հաջորդ հնգամյակին պարտադիր կլինի նաև գյուղի բնակչության համար։

Մեր դպրոցներում դասավանդում են որակյալ, փորձված, բարձրագույն կրթություն ունեցող մանկավարժներ։ 1960 թվականին մեր երկրում բոլոր քաղաքացիները միջնակարգ կրթություն կունենան։

Այսպես է իրագործվում կյանքում Սովետական Միության Կոնստիտուցիայով սահմանված ուսման իրավունքը։



# ՈՍԿԵԹԱՍԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Դ. ԳԱՋԱՋՅԱՆ

Ուսումնական տարվա սկզբին Թալինի շրջանի Ոսկեթաս գյուղի պիոներները անսպասելի նամակ ստացան Կրասնոդարի № 36 միջնակարգ դպրոցի պիոներներից։ Այդ օրը արտակարգ աշխուժություն էր տիրում Ոսկեթասի պիոներների շրջանում։ Նամակում այնքան հետաքրքիր բաներ էին գրված, որ պիոներներն անընդհատ խոսում էին նրանց մասին ու խորհրդածում։

Դասերից հետո, տեղի ունեցավ պիոներների հավաքը։ Դրուժինայի խորհրդի նախագահ Կարապետ Կարապետյանը բարձրաձայն կարդաց նամակը. «Մեր դրուժինայի պիոներները,— գրել էին կրասնոդարցիները,— կոլտնտեսային աշխատանքում մեծ գործ են կատարում։ Աշակերտուհի Մարիա Նիկոլաևան առաջավոր անասնապահ է, նա կոլտնտեսության անասնապահական ֆերմայում խնամում է երեք հորթ, Անդրեյի խնամքին են հանձնված կոլտնտեսության երկու ձիերը, իսկ Լիզան, Նատաշան և մյուսները լավ քաղհանավորներ են, պիոներ Սերգեյը բերքահավաքի ժամանակ չորս հարյուր կիլոգրամ հասկ հավաքեց...»։

Պիոներները լսում էին իրենց հեռավոր ընկերների գործերի մասին։ Նրանց հիացմունք պատճառեցին կրասնոդարցիների ուղարկած նվերները՝ Կրասնոդարի երկրամասի բուսական ու կենդանական աշխարհի մեծադիր քարտեզը, գեղեցիկ տուփեր, քարերի բազմաթիվ տեսակներ, գրքեր, դրուժինայի պատի թերթի համարը՝ նվիրված Տարաս Շևչենկոյին...

Կրասնոդարի պիոներների օրինակը շատ էր հուզել Հովսեփյան եղբայրներին։ Արսենը սովորում էր յոթերորդ դասարանում, իսկ Ռազմիկը՝ հինգերորդ։ Երբ հավաքից հետո տուն էին վերադառնում, Ռազմիկն ասաց.

— Արսե՛ն, եկ մենք էլ հորթապահ դառնանք...

— Մենք չենք կարող հորթ խնամել, հանկարծ կսատկեն, ի՞նչ պատասխան տանք,— պատասխանեց եղբայրը։

— Ինչո՞ւ չենք կարող, նրանք ինչպե՞ս են խնամում, նրանցից ինչո՞ւ ետ մնանք,— պնդեց Ռազմիկը։

Արսենն ուսերը թոթվեց։

— Եկ, հենց հիմա գնանք ֆերմա...

Եվ երկու եղբայր միասին գնացին կոլտնտեսության ֆերման։

— Էդ ի՞նչ եք լսել. այսօր բոլոր պիոներները գալիս են ֆերմա,— ասաց ֆերմայի վարիչ Միսակ Սարգսյանը։

— Ուզում ենք հորթեր խնամել,— պատասխանեց Արսենը։

— Քիչ առաջ մի ամբողջ ջոկատ էր եկել,— ասաց Միսակ Սարգսյանը։

— Ո՞ր ջոկատը, ո՞ր ջոկատը...

— Երկրորդ ջոկատը. Կիման ուզում է գառներ պահել, Ժենյան՝ ոչխարներ, իսկ դրուժինայի խորհրդի նախագահ Կարոն ուզում է անպայման ձիապահ դառնալ։

— Տեսնո՞ւմ ես դրանց, մեզնից առաջ են անցել,— ափսոսաց Արսենը։

— Նրանք արդեն գործի՞ են անցել...— հարցրեց Ռազմիկը։

— Հը՛մ, էդքան հեշտ բան չէ անասնապահ դառնալը... դրա համար պետք է դիմում գրել և խնդրել կոլտնտեսության վարչության թույլտվությունը,— ասաց ընկեր Միսակը։

— Նստենք և դիմում գրենք,— առաջարկեց Ռազմիկը։

Այդպես էլ արեցին։

Կոլտնտեսության վարչությունը հարգեց երեխաների դիմումները։ Հովսեփյան եղբայրներին խնամելու համար հանձնվեց հինգ հորթ, դրուժինայի խորհրդի նախագահ Կարապետյան Կարապետին՝ երկու ձի, մյուսներին՝ գառներ, ոչխարներ և այլն։

Դրանից հետո Արսենին ու Ռազմիկին հաճախ կարելի էր տեսնել անասնապահական ֆերմայում։ Նրանք մաքրում էին հորթերին, կերակրում ու ջրում։

Հորթերը մեծանում էին, աշխույժ ու կայտառ ցատկոտում Արսենի ու Ռազմիկի շուրջը։ Երբ հորթերից մեկը փռշտում էր կամ հիվանդության նշաններ ցույց տալիս, Ռազմիկն ու Արսենը անմիջապես դիմում էին անասնաբույժի օգնությանը։

Իսկ դրուժինայի խորհրդի նախագահ Կարապետյան Կարապետի խնամած ձիերը օրինակ էին դարձել ամբողջ շրջանում։

— Այ տղա՛, պիոներ Կարոյին տես ու նրանից անասուն խնամել սովորիր,— ասում էին կոլտնտեսականները, երբ մեկն ու մեկը վատ էր խնամում անասուններին,— սպիտակ Թաշկինակը, որ նրա խնամած ձիու մարմնին քսես, գույնն էլ չի փոխի։

— Իսկ գիտե՞ք, որ Մարտիրոսյան Կիմայի պահած գառները այնքան առողջ և այնքան աշխույժ են, որ տեսնելիս չես կարող նրանց չգրկել ու չսիրել…

***

Ոսկեթասի պիոներները որոշեցին գյուղացամերձ հողամասում քառակուսի բնային եղանակով եգիպտացորեն ցանել։

— Այ տղերք, էս հողերում եգիպտացորեն չի աճի, իզուր քրտինք եք թափում,— ասում էին կասկածամիտ մարդիկ։

— Կաճեցնենք,— վստահ պատասխանում էին պիոներները։

Երեխաները խնամքով էին մշակում եգիպտացորենի ցանքերը։ Նրանք ժամանակին կատարում էին փոցխումը, քաղհանը, ջրում, պարարտանյութ տալիս։

Ոսկեթասի պիոներների մշակած եգիպտացորենը աճեց և համոզեց բոլորին, որ Թալինի լեռնաշխարհում կարելի է եգիպտացորենի առատ բերք ստանալ…

Տարեվերջին Ոսկեթասի պիոներները իրենց կատարած աշխատանքների մասին նամակ գրեցին Կրասնոդարի պիոներներին։

# ԹԻՄՈՒՐԱԿԱՆՆԵՐԸ

Գ. ՈՒՄՐ-ՇԱՏ

Լուսանկար՝ Ս. ՏԵՐ-ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

Սաղարթախիտ ծառերի ստվերում, թավիշ խոտերի վրա նստել էին մի խումբ պիոներներ։ Սերյոժան «Պիոներ կանչ» լրագիրը ձեռքին, բարձրաձայն կարդում էր ինչ-որ ջոկատի պատանի թիմուրականների մասին։ Այդ օրերին էլ գյուղում ցուցադրվեց «Թիմուրը և նրա թիմը» կինոնկարը։ Ֆիլմը շատ ոգևորեց պիոներներին։ Նրանցից մեկը գրադարանից վերցրեց Ա. Գայդարի «Թիմուրը և նրա թիմը» գիրքը։ Շուտով դա ձեռքից ձեռք անցավ։

Կոտայքի շրջանի Գառնի գյուղի միջնակարգ դպրոցի չորրորդ ջոկատի պիոներները որոշեցին հետևել թիմուրականներին։

— Մի օր,—պատմում է ջոկատավարը,— մեր պիոներներն իմացան, որ Անուշ մորաքույրը մենակ է և օգնության կարիք է զգում։ Այդ մասին խոսեցինք ջոկատի խորհրդի նիստում։ Բոլորն էլ ցանկություն հայտնեցին օգնել նրան։

Այրի կնոջ տան տանիքն անձրևների ժամանակ կաթում էր։ Պատանի թիմուրականներն անմիջապես սկսեցին տանիքը վերանորոգել։ Բերեցին ջուր, հող, շաղախ պատրաստեցին և մի քանի օրում հողե տանիքը սվաղեցին։

Երբ հարկավոր է լինում կոլտնտեսության պահեստից հացահատիկ ստանալ, թիմուրականները պատրաստ կանգնած են։ Հացահատիկն աղալու գործը նույնպես իրենք են կատարում։ Ջրաղացը մոտիկ չէ. համարյա գյուղից դուրս է գտնվում, խոր ձորում։ Թիմուրականներ Սոֆիկը, Գարիկը,



Պիոներները փայտ են ջարդում

Նաթելլան, Սուրիկը երբեք չեն զլանում, տանում են և աղում։

Մորաքույր Անուշի համար թիմուրականները անտառից վառելափայտ են բերում, ջարդում և տեղավորում փայտանոցում։

Պիոներները դարձել են այրի կնոջ ամենասիրելի այցելուները։ Ինչքա՜ն է ուրախանում նա, երբ իր խրճիթում տեսնում է կարմիր վզկապավորներին։

Պիոներների աչքից չի վրիպել նաև Անուշ մորաքրոջ տնամերձ հողամասը։ Դա փոքրիկ բանջարանոց է։ Գարնանը նրանք բահերով հողը փորեցին, մարգերի բաժանեցին և ցանեցին։ Այդ աշխատանքներին սիրով մասնակցեցին Ցեդյան, Ռաֆիկը և մյուսները։

Պիոներները մեծ եռանդով ու ջանասիրությամբ նույնպես օգնում են հարազատ կոլտնտեսությանը։ Գարնանը նրանք արտերը մաքրում էին քարերից, օգնում սայլվորներին՝ պարարտանյութը դաշտ տեղափոխելու համար։ Եվ իզուր չէ, որ կոլտնտեսության նախագահ Մուշեղ Նաջարյանը գոհունակությամբ է խոսում նրանց մասին։

— Մեր դրուժինայի թիմուրականները,— պատմում է Ալվարդը,— միշտ օգնում են Անդրանիկ պապիկին, որը կույր է։ Շատ է պատահել, երբ մենք ընկերներով ջրել ենք նրա բանջարանոցը։ Սիրանուշը, Ժորան և Հրաչիկը հաճախակի լինում են նրա մոտ, գեղարվեստական գրքեր կարդում...

# ՆՐԱՆՔ ՊԻՈՆԵՐՆԵՐ ԵՆ

Ռ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Ժաննան պառկած էր մենակ։ Մայրիկն էլ տանը չէր։ Դե, առավոտյան ժամը ութից հետո ամեն մեկն էլ իր գործին է գնում՝ հիմնարկություն, դպրոց, շուկա։ Ժաննան էլ, սովորաբար այդ ժամին տանը չէր լինում, բայց այսօր նա հիվանդ է։

Նա հայացքը հառել էր լուսամուտի մոտ դրված գրասեղանի վրայի ժամացույցին։

— Տի՛կ-տա՛կ, տի՛կ-տա՛կ,— հանդարտ ու համաչափ լսվում էին ժամացույցի զարկերը։

Ժաննային թվում էր, թե ժամացույցն այսպես դանդաղ երբեք չի աշխատել։

— Դեռ ժամը տասն է,— մտածում էր Ժաննան,— իսկ ե՞րբ կլինի մեկը։

Թռչում էին ժամերը, իսկ Ժաննային թվում էր, թե դանդաղ, շատ դանդաղ են անցնում դրանք։

Ժամը մեկն էր։

Ժաննայի սիրտն արագ բաբախեց, երբ լսվեց դռան թակոցի ձայնը։

«Մերոնք են», մտածեց նա և ասաց թույլ ձայնով.— Համեցեք։

Այո, նրանք էին, կարմիր վզկապավորների մի խումբ՝ Ժաննայի դասընկերները։

Ժաննան պատմեց, որ երեկ դասերից հետո վերադարձել է տուն ու պառկել բարձր ջերմությամբ։ Բժիշկն ասել է, որ մի քանի օր դասի չգնա։

— Աղջիկնե՛ր, ես վախենում եմ չհասցնեմ. դուք ամեն օր նոր բան եք սովորում,— ասաց Ժաննան։

— Վախենալ պետք չէ։ Ամեն օր մենք քեզ նոր դասը կբացատրենք, կսովորենք միասին,— հանգիստ ասաց Դոնարան,— համաձա՞յն եք,— դիմեց նա ընկերներին։

— Դե, իհարկե, միասին կպարապենք,— պատասխանեցին բոլորը։

Ժաննան հիվանդ պառկեց ոչ թե մի քանի օր, այլ մի ամբողջ ուսումնական քառորդ։

Ամեն օր որոշակի ժամերի դասընկերները Ժաննայի մոտ էին գալիս, զրուցում նրա հետ, պատմում օրվա նորությունները, իսկ հետո, երբ Ժաննան ավելի լավ էր զգում, սկսում էին պարապել։ Նրանք սովորում էին օրվա դասը, կատարում տնային առաջադրանքները, կրկնում անցածը։ Ժաննան քայլում էր դասարանի հետ հավասար, և երբ դպրոց վերադարձավ, նրա համար ոչ մի մութ ու անհասկանալի բան չկար։ Տարեվերջի քննություններից հետո Ժաննան գովասանագիր ստացավ։ Այդ ժամանակ դասարանի ղեկավար ընկեր Գայանե Մարտիրոսյանն ասաց.

— Այդ գովասանագիրը, Ժաննա և քո՛նն է, և քո ջոկատի մյուս պիոներների՛նը. չէ՞ որ նրանք օգնեցին քեզ։ Իսկական պիոներն այդպես պետք է լինի։

Պիոները օրինակ է բոլոր երեխաներին։ Այդ մասին գիտեն չորրորդ ջոկատի պիոներները, գիտեն և աշխատում են լինել այդպիսին։

Երբ ամեն անգամ խոսք է լինում հուշելու մասին, չորրորդ ջոկատում ձեզ առանց վարանելու պատասխանում են. «Ո՛չ, մեզ մոտ չեն հուշում, չեն արտագրում»։

— Ինչպե՞ս վերացրիք այդ երևույթները,— կհարցնեք դուք։

Նման դեպքերում բոլորը նայում են մեկին, մի պիոների, որն ամենից շատ է պայքարել այդ երևույթների դեմ և որը հաղթել է։ Էդիկ Պետրոսյանն է այդ պիոները։ Էդիկը համառ է. որոշեց, նշանակում է՝ կատարեց։ Դասերի ժամանակ Սվետլանան հուշում էր բոլորին։ Նա շատ էր սիրում, երբ իրեն էլ էին հուշում։ Եթե Սվետլանային չէին հուշում, ուրեմն, նա այդ համարում էր անընկերասիրություն, վիրավորվում էր և շաբաթներով չէր խոսում ընկերների հետ։

Մի անգամ պատմության դասին Սվետլանան խնդրեց Էդիկին.

— Հուշիր, էլի, չգիտեմ։

Նա գրատախտակին կախված քարտեզի մոտ կանգնած հայացքը հառել էր Էդիկին ու սպասում էր։ Էդիկը նայում էր նրան անտարբեր հայացքով։ Սվետլանան այլևս չէր մտածում պատասխանի մասին։ Նա չարությամբ մտածում էր. «Նախանձ, չար ընկեր»։ Հետո էլ՝ «Երևի ինքն էլ չգիտի, դրա համար էլ չի օգնում»։ Սվետլանան նստեց. Նրա օրագրում «2» նշանակվեց։

Ուսուցիչը կանչեց և Էդիկին։ Ինչպես միշտ, նա սահուն, վարժ պատմեց դասը, պատասխանեց ուսուցչի հարցերին։ Նրան բոլորն էլ լսում էին ուշադիր։

Սվետլանան այս անգամ մտածում էր. «Պարծենկոտ, ուզում է ցույց տալ, որ ինքը շատ բան գիտի»։

Այդպես մտածում էր ոչ միայն Սվետլանան։ Հանրահաշվի դասին Դոնարան խնդրեց Էդիկին, որ հուշի։ Բայց Էդիկը համառ էր իր որոշման մեջ։ Իսկ հենց նույն օրը դասերից հետո նա Դոնարային ասաց.

— Ուզո՞ւմ ես հանրահաշվի դասը պարապենք միասին։ Այդ ավելի լավ է, քան հուշելը։

Դոնարան համաձայնվեց։ Հանրահաշվի հաջորդ դասին նա պատասխանեց և «4» ստացավ։

Սակայն հուշելը դեռ շարունակվում էր։ Անհանգստանում էին արդեն և մյուսները։ Եվ ահա ջոկատի խորհուրդը զբաղվեց այդ հարցով։ Հավաքվեցին պիոներները խոսելու անկարգապահության մասին։ Խոսում էին շատերը, իսկ Էդիկը ամենից անհամբերն էր։ Սվետլանան նկատեց, թե նա ինչպես էր հուշում ընկերներին, երբ նրանք խոսում էին այս կամ այն պիոների վատ արարքի մասին, հիշեցնում փաստերը։

«Եվ դեռ ասում է հուշել չի կարելի,— մտածում էր Սվետլանան,— ուրեմն, երբ ուզում է՝ կարելի է, իսկ երբ ոչ՝ չի կարելի։ Մեծ բան է, գերազանցի՜կ»։

Խոսում էին բոլորը իսկական ընկերասիրության, ազնվության, աշխատասիրության մասին։

— Չէ՞ որ մեր ջոկատում բոլորը ընդունակ են, կարող են սովորել,— ասում էր ջոկատավար Անահիտը,— ուրեմն ի՞նչն է խանգարում։

— Մենք դեռ լավ ընկերներ չենք,— ասում էր Հենրիկը,— ա՛յ, Լիդան երկրաչափությունից «2»-ներ է ստանում, բոլորս էլ գիտենք, որ նա ընդունակ է, ոչ ոք չի ասում «Լիդա, դու ծույլ ես, չես պարապում, դրա համար էլ «2»-ներ ես ստանում»։ Չենք ասում և նրան «օգնում ենք» հուշելով, թույլ ենք տալիս արտագրել տնային աշխատանքները։ Լիդան մեր ջոկատից խուսափում է, աշխատանքներին չի մասնակցում, մտածե՞լ ենք այդ մասին։ Ո՛չ։ Չենք մտածել նաև Ռոզայի և Վոլոդյայի մասին։ Իսկ մենք պիոներներ ենք։

— Իսկ դուք մտածե՞լ եք, թե ինչով կարելի է օգնել ջոկատին, ընկերներին,— հարցրեց դասղեկ ընկեր Մարտիրոսյանը, դիմելով ջոկատի խորհրդի անդամներին։

— Այո, մտածել ենք։



Ծրագրում են ջոկատի աշխատանքները

Էդիկն առաջարկում էր Լիդային առաջին հերթին կապել ջոկատի հետ։

— Բոլորս էլ գիտենք ինչպես լավ է նկարում Լիդան,— ասում էր նա,— առաջ պատահել է, երբ նրան որևէ հանձնարարություն ենք տվել, կատա-

րել է, կարողացել է կազմակերպել։ Պատի թերթն այս տարի վատ է աշխատում։ Մենք պատի թերթը կհանձնենք Լիդային։ Ռոզային ու Վոլոդյային օգնելու համար եկեք զրույց կազմակերպենք «Ինչպես օգտագործել օրվա ռեժիմը» թեմայով, իսկ Արշալույսին պետք է սովորեցնենք, թե ինչպես իրեն պահի դասերին։ Նա ռեժիմ ունի, բայց անուշադիր է դասի ժամանակ։

— Իսկ Սվետլանային և նրանց, ովքեր հուշում են, եկեք սովորեցնենք, թե երբ կարելի է հուշել,— ասաց ջոկատավար Անահիտը։

— Եթե դու, Սվետլանա, մեզ կարողանաս ասել, թե ինչպես անել, որ աշխատանքը ավելի հետաքրքիր լինի, որ օգնենք ընկերներին, հուշիր, մենք քեզ կլսենք, քո հուշելը իսկապես կօգնի։ Իսկ դասի ժամանակ հուշելը ինչի՞ համար է։

Սկզբում բոլորն էլ դժվարանում էին։ Բայց նրանք վարժվեցին և աստիճանաբար քայլեցին ջոկատի հետ հավասար։ Իսկ Լիդայի համար ուրախություն էր, երբ Միչուրինի ծննդյան 100-ամյակի օրը լույս տեսավ նրա կազմակերպած պատի թերթի առաջին համարը։

«Ջոկատի պատիվը իմ պատիվն է»,— մտածում է պիոներներից յուրաքանչյուրը և աշխատում բարձր պահել այդ պատիվը։

Երևան, Ս. Սպանդարյանի անվան դպրոց

# ԱՇԽԱՏԱՆՔՆ ՕԳՆԵՑ

Նրանցից շատերն առաջին անգամ էին լինում կոլտնտեսությունում։ Նրանց համար ամեն ինչ նորություն էր և չափազանց հետաքրքրական։ Ուշ աշնան տերևները, որ հանդարտ թափվում էին ծառերից և խշշում ոտքերի տակ, ավելի պայծառ էին թվում ու ավելի գրավիչ։ Նրանք մեկ թռչնանոց էին վազում, մեկ մտնում գոմը, մեկ գնում ճագարների մոտ և շարունակ հարցեր էին տալիս, իսկ ուսուցչուհի Վահրադյանը սիրով ու համբերությամբ պատասխանում էր նրանց հարցերին, խորհուրդներ տալիս նրանց։

— Չեմ կարողանում հասկանալ, ինչի՞ համար են հավերը թավալվում հողի մեջ, ասես լողանում են։

— Լողանում են, այո, թավալվելով ավազի և մոխրի խառնուրդի մեջ, հավերը մաքրվում են միջատներից...

Հանկարծ հավերն սկսեցին կչկչալ, իրար անցան, «ծուղ-րու-ղո՜ւ, կանչեցին աքաղաղները։

— Ի՞նչ պատահեց, հավերն ինչո՞ւ են անհանգստանում։

— Գուցե մեզնից վախեցա՞ն,— այս ու այն կողմից հարցրին Հայկուհին, Ֆլորան ու Անահիտը։

— Անպայման նկատել են թռչնապահուհուն,— ասաց անասնաբույժ Հայրապետյանը,— կերակրելու ժամն է... ահա և նա։

— Աղջիկնե՛ր, այստե՛ղ եկեք, հավերին կերակրում են։

Թռչնապահուհին թարմ ավելուկ ու խաշած գարու հատիկներն առատորեն սփռում էր գետնին։

— Այ թե ինչպես կխնամեն հավերին,— հիացմունքով նկատում էին աղջիկները,— ամեն բան այստեղ ռեժիմով է, կարգ ու կանոն կա։

— Թող թռչնապահուհին շարունակի իր աշխատանքը, իսկ մենք գնանք ճագարներին տեսնելու,— ասաց ուսուցչուհին։

— Սրանք «Անգորական» ճագարներ են,— բացատրում էր Վահրադյանը,— սա «Սպիտակ հսկան» է, տեսեք ի՜նչ խոշոր է։ Այս ցեղը մսատու ցեղ է, կան և ուրիշ ցեղեր. «Սովետական մողեր», «Արծաթագույն-շղարշային», «Սևաթույխ», որոնք հիանալի մորթ և լավ բուրդ ունեն։

Մարդիկ ընտելացնելով կենդանիներին, փոխում են նրանց բնույթը և նոր ցեղեր ստեղծում։

Մաքուր ու չոր վանդակներում ոստոստում էին ճագարները, տագնապահար շարժում բեղիկները, կամ կծկվելով, փակում աչիկները։

Մի բան, որ հատկապես մեծ զարմանք պատճառեց Ջվարթին, դա այն էր, որ կերը ոչ թե հատակին էր փռված, այլ ցանցզամբյուղով կախված էր վանդակի պատից։

Ճագարները երկարելով վզերը, պոկում էին կաղամբի թուփը կամ կրծում գազարը։

— Այդ նրա համար է, որ կերը չտրորվի ոտքերի տակ, չփչանա,— բացատրեց ուսուցչուհին։

Ջվարթը թեքվեց դեպի Անահիտն ու շշնջաց.

— Մենք էլ այդպես կանենք...

Քիչ հետո Երևանի Հ. Հակոբյանի անվան դպրոցի յոթերորդ «բ» դասարանի աշակերտները հրաժեշտ տվին կոլտնտեսականներին և վերադարձան դպրոց։

Դասերից հետո Անահիտն ու Ջվարթը միասին տուն գնացին։

— Մայրի՛կ, ո՞ւր է մեր հին ցանցզամբյուղը։

Մայրիկը բերեց ցանցզամբյուղը և տվեց Զվարթին։

Զվարթն ու Անահիտը սենյակից դուրս եկան...

Նրանք չորացրին վանդակի հատակը, ջրաման հարմարեցրին և ցանցզամբյուղի մեջ բանջարեղեն լցնելով, ամրացրին պատից.

— Դե, ճագարներին բեր, Անահի՛տ, ճաշը պատրաստ է,— կատակեց Զվարթը։

Թարմ բանջարեղենի հոտից ճագարներն իրար անցան։ Հոտոտեցին և ոչինչ չգտնելով, սրտնեղած հետին ոտքերով գոփեցին հատակը։

Աղջիկներն ու մայրիկը հետաքրքրությամբ նայում էին։

— Գտա՛ն, գտա՛ն,— բացականչեցին Զվարթն ու Անահիտը,— տես ինչպես են կրծում։ Զա՛ն, գործնական աշխատանքն օգնեց։

Հետևի ոտքերին հենված, վզերը երկարած՝ նրանք ցանցզամբյուղի միջից հանում էին կաղամբը, պոկում կաղամբի թերթիկները։

— Խը՛րթ, խը՛րթ, խը՛րթ...

Նայում էին Անահիտն ու Զվարթը և մտածում. «Չէ՞ որ Յուրան, Հայկուհին և Հենրիկը նույնպես ճագարներ են խնամում։ Կպարզաբանենք նրանց,



Պիոներները կոլտնտեսությունում

ամեն բան այնպես կանենք, ինչպես Շենգավիթի կոլտնտեսությունում»։

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ
(Երևանի Հ. Հակոբյանի անվան դպրոց)

## ՁՄԵՌԸ

### Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

Խոր ձյուն է նստել, ու շերտի տակ ձյան
Ծածկվել են, սուզվել ճամփա ու կածան:
Մտորում են լուռ՝ սարերը խոնուն,
Ասես թե մեկի ճամփան են պահում:
Հողն է հայրենի երազում ձյան տակ,
Դեռ չի ճողում մեր ձորում անտակ:

Մեղմացել է նա, անչափ բարակել,
Իր երկար հունով սառույց շալակել:
Եվ ծիծաղի պես փոքրիկ աղջկա
Աղբյուրն է զնգում, բայց խմող չկա:
Անծիր դաշտերին, անտառում, հանդում
Իջել է, փռվել մի ջերմ լռություն:

## ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

### Ա. ՍԱՀԱԿՅԱՆ

Ձյունն է իջնում մեղմ ու հանդարտ,
Քնքուշ փռվում ամենուր.
Ծերմակել են այգի ու արտ,
Եվ սար, և ձոր, և բլուր...
Բայց կարծես թե մանուկները
Ո՛չ մրսում են, ո՛չ դողում,
Առած իրենց սահնակները
Վազվզում են ու խաղում:

Ուր էլ նայես՝ խինդ է, խայտանք,
Մանկան ձայն է կարկաչում,
Եվ նրանց ջերմ կանչերի տակ
Ձմռան ցուրտն է նահանջում...
Թեկուզ փչեն խենք քամիներ,
Բուքը շաչի ու ոռնա,
Մանուկներով ամեն ձմեռ
Ծաղկուն գարուն կդառնա...

# ՄԵՐ ԵՐԿՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ

*Ի. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ*

(ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ)

*Լուսանկար՝ Ա. ԲԱՏԱՆՈՎԻ (ՏԱՍՍ)*

*Երեսունհինգ տարի առաջ՝ 1920 թվականի դեկտեմբերին կազմվեց Ռուսաստանի էլեկտրիֆիկացիայի պլանը։*

*Սովետական ժողովուրդը, ոգեշնչված մեծ Լենինի ցուցումներով, ձեռնամուխ եղավ երկրի էլեկտրիֆիկացմանը։ Ոչ միայն արտասահմանում, այլև մեր երկրում շատ մասնագետ-ինժեներներ չէին հավատում այդ պլանի իրականացման հնարավորությանը և ճշտությանը։*

*Ինչպես լավ հայտնի է ԳՕԷԼՌՕ-ի պլանը, որը նախատեսված էր տասը-տասնհինգ տարվա համար, գերակատարվեց տասը տարում։*

*Էլեկտրիֆիկացիայի և ժողովրդական պլանային տնտեսության հիմքն արդեն դրված էր։*

*Իսկ ինչ ենք տեսնում այժմ։ Այժմ մեկ օրվա ընթացքում մենք արտադրում ենք այնքան էլեկտրաէներգիա, որքան տալիս էին երկրի բոլոր էլեկտրակայանները միասին վերցրած ամբողջ 1920 թվականի ընթացքում։*

*1955 թվականի վերջում շահագործման կհանձնվի Վոլգայի հիդրոէլեկտրական հսկան՝ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը։ Նա ութ հարյուր կիլոմետր տարածության վրա Մոսկվային կհաղորդի վեց միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, այսինքն այնքան, որքան էներգիա կարող են տալ Սովետական Հայաստանի բոլոր կայանները իրենց լրիվ շահագործման ժամանակ։*

*Խոշոր կառուցումներից մեկը՝ Կախովկայի հիդրոէլեկտրակայանը արդեն էներգիա է տալիս։*

*Շուտով հոսանք կտան նաև Վոլգայի վրա կառուցվող Գորկու և Ստալինգրադյան, Անգարայի վրա կառուցվող Իրկուտսկի հիդրոէլեկտրակայանները և այլն։*

*Էլեկտրիֆիկացիայի այդպիսի բացառիկ զարգացման շնորհիվ Սովետական Միությունն առաջ անցավ աշխարհի բոլոր երկրներից և այժմ էլեկտրաէներգիայի արտադրանքով գտնվում է երկրորդ տեղում։*

*Մեզ մոտ Հայաստանում ավարտվում է Սևան-Հրազդանի կասկադի հիդրոկայանների շինարարությունը։ Կառուցվելու է Երևանի նոր հիդրոկայանը և շինարարական աշխատանքներ են սկսվելու Որոտան և Դեբեդ-Ձորագետ գետերի վրա։*

*Սովետական Միությունում, Մոսկվայի մոտ, արդեն աշխատում է առաջին ատոմային էլեկտրակայանը հինգ հազար կիլովատ հզորությամբ։ Այդ կայանը օգտագործում է միջուկային վառելանյութը, այսինքն ատոմային վառելանյութը, որը ստացվում է ուրանի հանքից։*



Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի շլյուզներից մեկը։

*Ատոմային միջուկի մասնատումը ազատում է ատոմի ներմիջուկային հսկայական էներգիան և վերածում նրան ջերմության, որն իր հերթին շոգետուրբինում վերածվում է մեխանիկական էներգիայի, իսկ նրա հետ միացված գեներատորի մեջ՝ էլեկտրաէներգիայի։*

*Մեր Միության մեջ կառուցվում է ատոմային էլեկտրակայան՝ հարյուր հազար կիլովատ ուժով։ Երկրի գիտական ձեռնարկությունները զբաղված են ատոմային միջուկից անմիջականորեն էլեկտրաէներգիա ստանալու հարցով։*

# ՎԱԽՏԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Վերջերս նշվեց սովետահայ գրող Վ. Անանյանի ծննդյան հիսուն տարին։

Անանյանը մեր պատանի ընթերցողներին ծանոթ է իր որսորդական պատմվածքներով ու արկածային վիպակներով։ Նրա գործերը թարգմանվել են շատ լեզուներով։ «Մանկությունը լեռներում» գիրքը լույս է տեսել Չինաստանում, որսորդական պատմածները հրատարակվել են ռուսերեն, լեհերեն, ռումիներեն։ Իսկ «Սևանի ափին» գիրքը լույս է տեսել տասնվեց լեզվով՝ կես միլիոնից ավելի տիրաժով։ Անանյանը շարունակում է նոր գործեր ստեղծել մեր պատանիների համար։ Նա ավարտել և տպագրության է հանձնել իր նոր արկածային վիպակը՝ «Հովազաձորի գերիները», որը թարգմանված է ռուսերեն և պետք է լույս տեսնի Մոսկվայում։ Այդ վիպակի հիման վրա Երևանի կինոստուդիան 1956 թվականին մեր պատանիներին կտա նոր կինոնկար։ Վ. Անանյանը տպագրության է պատրաստել իր որսորդական պատմվածքների նոր գիրքը։

Տպագրում ենք այդ գրքի պատմվածքներից մեկը։



## ԵՍ՝ ԻՆՉՊԵՍ ՈՐ ԿԱՄ

*Ա՜խ, էս պիոներները հոգիս հանեցին։ Ամեն անգամ որսից վերադառնալիս շրջապատում են ու ձեռ առնում. «Էդ ոնց է, պապի՛, էլի դատա՞րկ ես եկել...» Ասում եմ, երեխեք ջան, հո ամեն որսի գնալիս բան չեն սպանի, ախր մեղք են... Ասում են՝ «Թա որ խղճում ես կենդանիներին, ինչի՞ ես որսի գնում...»*

*Հիմի ասեմ, երեխեք ջան, թե ինչի եմ որսի գնում։*

*Կյանքիս մեծ մասը սարերում եմ անցկացրել։ Դե ոնց ես հրացանը չվերցնեմ ու սար չբարձրանամ։*

*Բարձրանում ես սարը ու ինչքան բարձրանում ես, օդը դառնում է անապական, շնչում ես ազատ, լիաթոք, զգում ես, որ կայտառանում ես, ուժերդ ավելանում են։ Նստում ես մի ժայռի գլխի, նայում ես քարերին թառած արծիվներին, նայում ես մեր Արարատյան չքնաղ դաշտին, նայում ես ճերմակ գլուխը հուրհրատին տվող ծեր Արարատին... Մեկ էլ տեսնում ես կաքավների մի երամ՝ թը՜ռռ, եկավ իջավ դիմացիդ քարին, ու մի համերգ սկսվեց, ի՜նչ համերգ։ Կղկղում են հազար ձենով։ Միայն էն գիտեմ, որ հմայված-տարված նրանց երգն եմ լսում ու մոռանում եմ, որ կրակելու պատրաստ հրացանը գոգիս է, մոռանում եմ, որ որսի եմ եկել...*

*Արծիվը լայն թևերը թափահարելով իջնում է ժայռից, թե՞ ես եմ անզգույշ հազում, որ կաքավների ձայնը կտրվում է։ Մեկ էլ տեսար ժայռի ծերպից մի այծյամ դուրս պրծավ խրտնած, մի բոպե կանգ առավ, խլուշ-խլուշ անելով դես-դեն նայեց, որ տեսնի թևերի ձենը որտեղից է գալիս, արծիվը հո միտք չունի՞ իր ուլի վրա հարձակվելու։ Ուլը չի երևում, բայց ես գիտեմ, որ նա ժայռի փշակում է, մայրը հրամայել է նրան անշարժ մնալ... Մտիկ եմ անում էդ վախեցած-մոլորված մորը, գիտեմ, որ նրա տագնապը իր կյանքի համար չի, այլ ժայռում տապ արած իր ձագի համար։ Դե ձեզ եմ ասում, երեխեք ջան, ո՞նց ես զենք բարձրացնեմ էդ կենդանու վրա։ Ու հետո էլ ձեռ եք առնում ինձ թե՝ «Պապի՛, էլի որսից դատա՞րկ ես եկել...»։*

*Վեր եմ կենում հեռանում ժայռի գլխից՝ սիրտս լիքը, ինքս ինձանից գոհ, որ արյուն չթափեցի էդ սիրուն օրը։ Հեռանում եմ, որ իմ ներկայությամբ չպղտորեմ էդ անմեղ կենդանիների կյանքը։*

*Անց եմ կենում սարի մյուս երեսը, մտնում եմ անտառը. զովը խփում է երեսիս։ Գիտեմ, որ անտառում արջ է պատահում, դե արջը գազան է, նրան խփելը մեղք չի։ Վերջալույս իրիկնադեմին հեռու մի ձորում առվի մոտ գտնում եմ իմ փընտրած կենդանիներին, արյունը գլուխս է խփում, հրացանս մեկնում եմ, բայց... Չէ, որսորդ, կաց մի տեսնենք ինչ բանի են էս բրդոտները... Խաղում են, տե՜ս... Է՜հ, թող խաղան, վերջին խաղերն են իրենց մոր հետ։ Վաղը-մյուս օրը կջոկվեն մորից, ամեն մեկը իր համար ընտանիք կկազմի, թող խաղան վերջին անգամ... Ու ձեռքերս թուլանում են, հրացանիս փողն ինքն իրեն իջնում է։ Հետո էլ ասում եք՝ «Ինչի՞ ես որսից դատարկ գալիս...»։ Է՜հ, ինչ անեմ, երեխեք ջան, որ բնությունն ինձ էսպես է ստեղծել։*

*Մարդ քիչ է մնում հրացանը տանի որսորդական խանութ ու ասի՝ «Ծախեցեք, էլ դա ինձ պետք չի»։ Վերջին օրերս քիչ էր մնում, որ էդպես էլ*

անեի, բայց մի դեպք եկավ տակնուվրա արավ տրամադրությունս, ու միտքս փոխեցի։

Դա անցյալ կիրակի էր, երբ ես որսը շալակիս հանդից տուն եկա ու փառավոր եկա, հո հիշո՞ւմ եք… Ես կարծում եմ մենակ էն օրը գլխի ընկաք, թե ի՞նչ կրակող եմ եղել ես։ Բայց գիտեմ, որ շատերդ մտածում եք, թե՝ «էս ինչպե՞ս է, որ էս անգամ Արշակ պապը որսով տուն եկավ»։ Հիմի պատմեմ։

Ծաղկաշենից ոչ շատ հեռու մի ձորակ կա։ Իմ սիրած տեղն է դա։ Վերևից մի զուլալ առու է քչքչալով իջնում։ Նոսր անտառը ավլի երկու ափերից կանաչ ամպի նման գնում է դեպի լեռները։ Բացատներ կան էդ անտառում, ինց որ երկրային դրախտ. ախր իզուր չեն մեր պապերը Ծաղկաշեն դրել անունը. գույն-գույն ծաղիկները կանաչ խոտի հետ մարդու աչք են ուրախացնում։ Բա դրանց հոտը, դրանց անմահական հոտը… Նստել եմ մի քոթուկի, ու իմ սովորության համաձայն, հրացանը գոգիս՝ նայում եմ կանաչի մեջ պսպղող առվին, լսում եմ ծաղկից-ծաղիկ թռչող մեղուների բզզոցն ու, վայրի համեմների հոտով հարբած, մտքերիս ծովն եմ ընկել։ Ու էդ ժամանակ սիրտս լցված բարությամբ ուզում եմ, որ ամեն շունչ արարած էլ ապրի էս սիրուն աշխարհում։

Մեկ էլ խլրտոց լսվեց ու անտառի շվաքից մի եղնիկ դուրս եկավ՝ ձագն էլ հետևից։ Որ արևի շողքն ընկավ դրա հորթի վրա, մեջքի զոլերը հուրհրատին ավին. էդքան էլ սիրուն արարա՞ծ… Ոտները բարակ, փորի տակը ճերմակ, վիզը գեղեցիկ։ Անհանգիստ ու չարաճճի մի կենդանի էր դա, որ մեկ մտնում էր մոր փորի տակ, մեկ վիզն էր նրա գնչին քսում, մեկ ծույլ էր լինում մի թփի գլխով՝ ուլիկի նման։ Իսկ մայրը անհանգիստ դես-դեն էր նայում, գիտեր, որ լավ բան չի սպասում թփերից բաց տեղ դուրս եկողին։ Նա դնչով հրեց-սաստեց ձագին, թե՝ շուտ արա, ջուր խմիր, եր դառնանք։ Հորթը վազեց դունչը մեկնեց առվին, մեկ խմում էր, մեկ սևուկ դունչը վեր ցցում դես-դեն նայում։ Իսկ մայրը գլուխը բարձր պահած հսկում էր. մեծմեծ ականջները թեքում էր դես-դեն ու որսում ամեն շշուկ, ամեն կասկածելի ձայն։

Ես քարացած նայում եմ, չեմ շարժվում, որ հալալ ջուր խմի։ Հանկարծ առվի մոտի մացառները շարժվեցին, ու կանաչ թփի միջից մի գունդ կրակ դուրս պրծավ, եղնիկի ձագին հափշտակեց ու տեսիլքի նման չքացավ… Խեղճ մայրը բղավեց, ճչաց, դես-դեն վազվզեց, էլ ո՞ւր. մահը կայծակի նման խփեց-տարավ իր բալին… Սիրտս մղկտաց, ինց որ մոր գրկից զավակը խլեն, փախցնեն։ Ման էր գալիս մայր եղնիկը մղկտալով, ման էր գալիս մոլոր, սիրտը փշրված ու իր կենդանական ձայնով կորած բալին էր կանչում…

Ինչքան որ բարություն կար սրտումս, փուլ եկավ էդ րոպեին։ Փամփուշտները դրի հրացանիս մեջ ու վեր կացա։ Ինց թե դու էն անմեղ դառանը փախցնե՞ս։ Հրացանի կեսից բռնած վազ տվի, ջուրն անցա ու գազանի հետքը գտնելով, առաջ գնացի կուզեկուզ։ Մի չարություն է եռում սրտումս… երեխեք ջան, մի չարությո՛ւն, որ զգում եմ, եթե էդ արյունարբու պատահի ու ձեռքիս հրացան չլինի՝ մատներովս կխեղդեմ նրան ու ատամներովս սիրտը կծվատեմ։

Հովազը իր որսին հեռու չի տանում։ Հանկարծ թփերի մեջ երևաց գազանի չալ մեջքը, իսկ երկար պոչը խփում էր խոտերին։ Հասկացա, որ ոտներիս ձայնը լսել է, ջղայնանում է, որ խանգարում եմ իր ճաշը։ Բայց գլուխը վեր չի բարձրացնում, շարունակում է իր անխիղճ գործը. դա երևում է նրանից, որ խալալոր մարմինը շարժվում է, գալարվում։

Ահ չունի հովազը, ոչ էլ ամոթ։ Աչքիդ առաջ իր



…շարունակում է իր անխիղճ գործը…

զոհին կպատառոտի ու քո կողմն էլ չի նայի, բանի տեղ չի դնի։

Մատս հրացանիս ձգանին դրած մոտեցա։ Գլուխը վեր քաշեց, արյունոտ բեղերը շարժեց,

ցույց տվեց սուր-սուր ժանիքները։ Գաղաղել է, և գիտեմ, որ այդպիսի ժամանակ մոտենալ հովազին, նշանակում է գնալ ուղիղ մահու բերանը։ Բայց դե խսկի ետ կդառնա՞մ... Շատ էլ սրտոտ չեմ, բայց ականջիս դեռ հնչում էր բալիս կորցրած մոր ձենը, ու դրանից սիրտս պողպատ էր դառել, էնպես էի լցվել վրեժով, որ հովազը չէ, եթե առյուծ էլ դեմս դուրս գար՝ աչք չէի թարթի, ետ չէի դառնա։

Տեսավ, որ հրացանը մեկնեցի, մեջքը ուռեցրեց աղեղի նման, կուտակ եկավ, փորը գետնին կպցրեց ու ժնգժնգացրեց. մի վայրկյան էլ որ ուշացնեմ՝ ճիրանները բացած կթռչի վրաս։ Էլ ժամանակ չավ։ Նշան բռնեցի ու կրակեցի։ Որ կրակեցի, մի գոռոց լսվեց, ծառն ի վեր բոցի նման մի բան վեր թռավ ու ցած ընկավ։

Վիրավոր հովազից վտանգավոր բան չկա աշխարհում, կրակեցիր, թող հեռացիր, թե չէ վրա կհասնի, կպատառոտի։ Բայց դե սիրտս դաղված է, խսկի ե՞տ կգնամ։ Թփերը խշշտում են, իսկ ես՝ ուղիղ դեպի էդ խշշտոցը։ Մեկ էլ տեսնեմ դուրս սողաց թփերից ու փորը գետնին քսելով, աչքերը արյունով լիքը գալիս է դեպի ինձ. մեջքը ջարդվել էր, հետևի ոտքերը քարշ էր տալիս։ Կերա՞ր, հիմի որ թռչել չես կարող, դե առաջ արի տեսնենք։ Մոտեցավ ժնգժնգոցով, իսկ ես հանգիստ նշան եմ բռնում կլոր գլխին։ Կրակեցի՝ մնաց տեղում, չուռ եկավ, սպիտակ փորով դեպի երկինքը։

Մորթին ուսս գցած առվի ափով իջնում էի ցած, իսկ վերևում, նոսր կաղնուտում հեռվից ինձ հետևում ու քայլում էր մայր եղնիկը. երևի ուզում էր հարցնի, թե՝ «Բարի մարդ, շնորհակալ եմ, որ սպանեցիր իմ դուշմանին, բա ո՞ւր մնաց իմ բալեն...»

Ու էդ դեպքից հետո հաճախ մտածել եմ, թե էն ինչ հիմար միտք էր մտել գլուխս, ո՞նց թե հրացանս ծախեմ։

Չէ, երեխեք ջան, քանի աշխարհումս դեռ չարը չի վերացել, ու իմ աչքերում էլ դեռ լույս կա, հրացանը միշտ ձեռքիս պատրաստ պիտի լինի, իսկ փամփուշտներս՝ լիքը...

# ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄԸ



Պիոներների հետ միասին քեմ են բարձրանում տարբեր մասնագիտության տեր մարդիկ՝ ինժեներ, ուսուցիչ, ջոկատավար։ Նրանք ողջունում են նորեկյարին՝ մանկավարժական և պիոներական գործունեության քսանհինգամյակի առթիվ։

Եվ հիշում է նորեկյարը։ Կարծես քե երեկ էր։ Այնպես շուտ անցավ քսանհինգ տարին, բայց այնպե՞ս առատաբեր եղավ։ Ինչպես շուտ մեծացան այդ մարդիկ, դարձան հայրենիքի, պարտիայի ու ժողովրդի համար պիտանի քաղաքացիներ։ Եվ հպարտանում է նորեկյարը։ Չէ՞ որ դրանք իր սաներն են, նրանց է փայփայել, անցրել նաև իր հոգատար ձեռքը...

Վարդգես Բարախանյանը Կրուպսկայայի անվան դպրոցն ավարտելուց հետո, չբաժանվեց սիրելի հարկից։ Աշխույժ, բարձրահասակ, կապուտաչյա, միշտ գլխաբաց այդ պատանին դպրոցում ջոկատավար էր։ Նա եռանդուն կազմակերպիչ էր, համախմբում էր պիոներներին, սիրում էր պիոներական աշխատանքի ռոմանտիկան։ Միշտ լինել պիոներների հետ, միշտ նրանց նման հոգով պատանի մնալ,— ահա նրա կյանքի նշանաբանը։

Բարախանյանը շատ է աշխատում։ Նա բոլոր աշխատանքներում էլ, լինի ջոկատավար՝ համբարի կամ պիոներական ճամբարի աշխատող, ջոկատավարական դպրոցի, կամ Պիոներների պալատի դիրեկտոր, նա իր ուժերն ամբողջապես նվիրել է մատաղ սերնդին։ Նա եղել է Կոմունիստական սերնդի անխոնջ դաստիարակներից մեկը։

Բարախանյանը պիոներական աշխատանքի ակտիվ նախաձեռնողներից է։ Նրա մասնակցությամբ մի քանի հազար ծաղկի բույս ու ծառ անցրին Հայաստանի մայրաքաղաքի պիոներները, սկսեցին կառուցել Երևանի Մանկական երկաթուղին, Կիրովի անվան գրադարանը։ Բարախանյանը այժմ Կրուպսկայայի անվան դպրոցի պիոներական դրուժինայի շեֆ ջոկատավարն է։ Նա ամեն կերպ օգնում է դրուժինայի աշխատանքներին։

Իսկ ինչքա՞ն հոգատար է նա։ Բարախանյանը բազմաթիվ նամակներ է ստանում նախկին սաներից, որոնք նրանից խորհուրդներ են հարցնում և սիրով պատասխանում։ Ահա պալատ են եկել մի խումբ պիոներներ։

— Ես ուզում եմ ընդունվել ավիոմոդելիստների խմբակը,— դիմում է մեկը նրան։

— Իսկ ես՝ պարի,— ավելացնում է մյուսը։

Բարախանյանը բոլորին էլ հասնում է, օգնում, մտածում նրանց ապագայի մասին։

Ամեն օր, երբ վերջանում է աշխատանքը և բոլորը տուն են գնում, նա նստած հիմնարկի իր առանձնասենյակում մտածում է վաղվա անելիքների մասին...

Վաստակավոր ուսուցիչ, հասարակական ակտիվ աշխատող, պիոներների մտերիմ ընկեր, բարեկամ և խորհրդատու,— ահա այսպիսին է Վարդգես Բարախանյանը՝ իր սիրած գործի պայծառ էնտուզիաստը։

Ռ. ԱՍՄԱՐՅԱՆ



# ՀՈՒՇԱՐԱՐԸ

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

— Ո՞վ է գալիս... նա է որ կա,
Չէ՞ք ճանաչում Շահենին:—
Հայացք դարձած աղջիկ-տղա
Բակից փողոց նայեցին:
— Մի մետրանոց լեզու ունի,
Բլբլում է բերանբաց,
Ռադիոն է մեր դասարանի.—
Քրքջալով Սոսն ասաց:—
Փրկիչն է նա մոռացկոտի,
Ծույլի ընկերն անկաշառ,
Ողջ աշխարհում դու չես գտնի
Նրա նման հուշարար:
Նա քիմիայի դասին մի օր
Սոսին հուշեց... այ քեզ բա՜ն,
Իբր գազ է $H_2O$-ն,—
Փռթկաց հանկարծ Թամարան:
Իսկ երբ իրեն դաս հարցրին,
Գրատախտակի մոտ կանգնած
Դարձավ արձան՝ համր ու լռին,
Կավիճի պես ճերմակած:




Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Արևի հետ էր Հասմիկն արթնանում,
Առանց մարզանքի երբեք չէր մնում,
Հո չէր թողնում, որ մայրը գործ անի,
Հասնում էր իսկույն ամեն մի բանի:
— Արևին մատաղ,— գովում էր տատը,—
Ոսկի է թոռիս ամեն մի մատը...
Դպրոցից էլ միշտ բերում էր «չորս», «հինգ»...
Բայց հենց որ դարձավ նա գերազանցիկ,
Քիթը վեր ցցեց, դարձավ պարծենկոտ,
Տատիկը մնաց ծիծաղին կարոտ,
Էլ ընկերներին բարև չէր տալիս,
Դպրոցից էլ միշտ մենակ էր գալիս,
Պառկում էր մեջքին, «մայրիկ, գիրքս տուր,
Շորս արդուկիր, որ հագնեմ մաքուր»...
Կամ էլ գոռում էր՝ տատի, ա՜յ տատի,—
Եվ ջուր էր ուզում առանց ամոթի...
Օրվա մարզանքը ու գործը թողեց,
Անգործությունից, թուլացավ, թմրեց,
Դպրոցում էլ դե սկսեց «ոչ»-ը
Վերջապես բռնեց «երեքի» պոչը:




ՍԱՐՄԵՆ

Ծույլ Ռուբիկը
Դասը թողած՝
Խաղ է անում
Մեր բակում:
Գալիս է տուն
Այնպես հոգնած,
Որ իր աչքերն է
Փակում:
Երբ ասում են՝
Դաս սովորիր,
Շորերն հանում է
Պառկում:
Դաս է սերտում
Վահանիկը,
Գիրք է կարդում
Մեր Արփիկը,
Թող ամաչի
Մեր Ռուբիկը:

# ԿԱՐԻՆԸՋԿԱՆ

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Կարի՛նըչկա, Կարի՜նըչկա,
Այսպես աղջիկ իսկի չկա...
Մեքենայով գալիս-կանգնում,
Ու դպրոց է հպարտ մտնում:
Թևի տակին՝ մի պայուսակ
Ուտելի՞ք է տեսակ-տեսակ:
Հագին՝ շորեր մետաքսափայլ,
Մի օր թավիշ, մի օր էլ՝ շալ:



Ոտքին՝ լաքե կոշի՜կ փայլուն,
Ճոճվելով ո՜նց է քայլում:
Ո՜նց է նայում խունջիկ-մունջիկ,
Ճակատի վրա՝ մազի փնջիկ:
Ժապավենն էլ՝ ծոծրակին
Պարաշյո՜ւտ է մի անագին...
Կարի՛նըչկա, Կարի՜նըչկա,
Մարդ էլ այսպես դպրո՞ց կգա...

# ՉՈՓՉՈՓԻԿԸ

Կ. ՉՈՒԿՈՎՍԿԻ

Նկ. Վ. ՊՈՂՈՍՅԱՆԻ

Մահճակալից վերմակ, սավան
Թևեր առան, ելան փախան:
Բարձն էլ նույնպես, հապա մի տես,
Առաջ բռավ դոդոշի պես:
Մոմակալն եմ փնտրում տանը,
Նա մտնում է վառարանը:
Հետո ներքով գիրք ու տետրակ
Փախան մտան սեղանի տակ:
Թեյ խնդրեցի ինքնաեռից.
Այդ ցմփորն էլ փախավ ինձնից:
Հարբուկները, բլիթները,
Կոշիկներ ու խոզանակ
Պտտվում են, գլորվում են
Ու փախչում են շարունակ:
Կրակխառնիչ,
Մատիտ, գրիչ,
Պատառաքաղ ու գոտի,
Ափսե, տետրակ,
Սրիչ, դանակ
Հավաքվեցին մոտ-մոտի:
Պտտվեցին գլոր-գլոր
Ու շարվեցին չուրջս բոլոր:
Ի՞նչ պատահեց,
Ի՞նչ կատարվեց,
էդ ո՞նց եղավ, որ հանկարծ
Ինձնից փախան, հետո եկան
Ու շարվեցին իմ առաջ:
Մեկ էլ մորս ննջարանից
Չոփչոփիկն է ներս վազում,
Սպառնալից նայում է ինձ,
Նայում է ինձ ու ասում.
«Դու անպիտան, դու զզվելի,
Խոզի զոնի անլվա,
Կեղտոտ, կպրոտ դու գարշելի,
Հապա նայիր քեզ վրա.
Դեմքդ կեղտոտ,
Քիթդ մրոտ,
Վիզդ կպրոտ,
Ա՛յ, ա՛յ, ա՛յ,
Նույնիսկ հագի քո շալվարը
Փախավ քեզնից,
Վա՛յ, վա՛յ վա՛յ:
Առավոտյան լուսաբացին
Լվացվում են մկնիկները,
Փիսիկներն ու բադիկները
Լվանում են տոտիկները,
Լվացվում են սարդ ու բզեզ,
Իսկ դու կեղտոտ կպրոտի պես,
Հապա նայիր դեմքիդ, մի տես,
Մի տես հապա, նայիր հապա,
Քեզնից փախան կոշիկ, գուլպա:
Չոփչոփիկն եմ ես ահավոր,
Ցնցուղների մեծ հսկան,
Նրանց պետն եմ նշանավոր,
Ծիլոպների մեծ արքան:
Երբ ոտքս գետնին խփեմ,
Իմ քաջերին կանչեմ ես,
Նրանք զինված՝ անեղ խմբով,
Շարքով իսկույն կգան ներս:
Ե՛վ կճաչան, և՛ կնչան,



Եվ տեսնելով կպրոտին
Կզազազեն ու կըռռնան,
Կպատրժեն նպրոտին,
Խոզանակով քեզ կքերեն,
Քեզ կլվան, կտորեն:
Չոփչոփն ուներ պղնձե թաս,
Խփեց, կանչեց, Կարա-բարաս:
Հենց որ կանչեց, արագ-արագ
Եկան ճիլոպ ու խոզանակ,
Հարձակվեցին իմ վրա,
Եվ ասում են՝ այ տղա՛,
Մենք մաքրում ենք կեղտ ու մուր,
Մաքրում մաքուր ու մաքուր,
Որ դո՛ւ, կպրոտ սև տղա,
Դառնաս մաքուր երեխա:
Հետո օճառն ինձ մոտեցավ,
Մազերիս մեջ մտավ խոր,
Ինձ տրորեց ու փրփրեց,
Տանջեց, կծեց ինչպես բոռ.
Այդ կատաղած ճիլոպից
Փախա ինչպես մահակից,
Վազում էի ես արագ,
Փողոցներով շարունակ,



Հասա այգին վերջապես,
Ցանկապատից թռա ներս,
Բայց ճիլոպն էր հալածում,
Գայլի նման ինձ կծում:
Այսպես խայթված, հույսս կտրած,
Նայում էի ծառուղուն,
Տեսա Տոտող-Կոկոշի հետ
Կոկորդիլոս մեծ քեռուն:
Իմ լավ քեռին
Իր երախը լայն բացեց,
Էդ կատաղած ճիլոպին
Ագռավի պես կուլ տվեց:
Հետո այնպես նա մռնչաց
Ինձ վրա,
Ոտքը գետին խփեց, ճչաց
Ինձ վրա:
Ասում է, թե կորիր տուն,
Կորիր տուն,
Դեմքդ լվա,
Դու ճպռոտած կեղտոտ շուն,
Կեղտոտ շուն:
Թե չէ այնպես կճխլեմ քեզ.
Ինձ ասաց,
Կտորեմ քեզ, կուլ կտամ.
Ինձ ասաց:

Լեղապատառ փողոցներով սլացա,
Մտա սենյակ չոփչոփիկին մոտեցա:
Եվ փրփրող օճառով,
Եվ հոտավետ օճառով
Ողջ մարմինս լվացի,
Կեղտից, ճարպից,
Կպրից, մրից
Իմ երեսը մաքրեցի:
Հենց որ դարձա այդպես մաքուր ու փայլուն
Թաքստոցից ելավ շալվարս իսկույն.
Կարկանդակը եկավ ասաց. իմ ընկեր,
Բաց բերանդ ու ինձ կեր:
Յուղոտ բլիթն ու գաթան
Իսկույն բերանս մտան,
Գիրք ու տետրակ հենց լսեցին
Այդ մասին,
Ուրախացած պար բռնեցին
Միասին:
Այստեղ չոփչոփն ահավոր
Ցնցուղների մեծ հսկան,
Նրանց պետը նշանավոր՝



Ճիլոպների մեծ արքան,
Ինձ մոտեցավ երգով, պարով
Եվ ասաց ինձ համբուրելով.
Այժմ ահա սիրում եմ քեզ,
Այժմ տղաս գովում եմ քեզ,
Դու իմ կեղտոտ կպրոտ ճուտիկ,
Այ հասկացար ինձ վերջապես:
Միշտ լվացվիր, միշտ լվացվիր,
Թե իրիկուն, թե առավոտ,
Կպրոտներին,
Ճպռոտներին,
Հազար ամոթ.

Հազար ամոթ:
Լվացվեցեք իմ ճուտիկներ
Թե իրիկուն, թե առավոտ,
Կպրոտներին, ճպռոտներին
Հազար ամոթ, հազար ամոթ:
Կեցցես օճառ դու հոտավետ,
Եվ դու փոշի ատամների,
Կեցցես փափուկ երեսսրբիչ,
Եվ խիտ սանր դու մազերի:
Եկեք լող տանք, լողանանք,
Սուզվենք ջրում զովանանք,
Տաշտակի մեջ, տակառում,
Գետակներում, ծովերում,
Ավազանում, բաղնիքում:



Միշտ ամեն տեղ, ամենուր,
Կեցցե՛ս, կեցցե՛ս, մաքուր ջուր:

*Փոխադրեց՝ Վ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ*

# ԽՆԱՄՔՈՎ ՎԱՐՎԵՑԵՔ ԳՐՔԵՐԻ ՀԵՏ

*Ռ. ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ*

*(Բժիշկ)*

Այս ամառանը Երևանի Կիրովի անվան մանկական զբոսայգու ընթերցարանում իմ ուշադրությունը գրավեց մի դպրոցական, որը գիրք էր կարդում: Նա ամեն անգամ գրքի էջերը թերթելիս մատները տանում էր բերանը՝ թացացնելու համար: «Ուրեմն սա էլ է պատկանում այն դպրոցականների թվին, որոնք դեռևս չգիտեն, թե ինչպես պետք է վարվել գրքի հետ», մտածեցի ես: Ակամա հիշեցի ֆրանսիական գրող Ալեքսանդր Դյումայի «Թագուհի Մարգո» վեպը: Այնտեղ, իմիջիայլոց, կա մի պատմություն, թե ինչպես էր ֆրանսիական թագուհի Կատերինա Մեդիչին թունավորում իր հակառակորդներին: Մեդիչին նրանց ուղարկում էր գրքեր, որոնց թերթերին քսված էին լինում թունավոր նյութեր: Թագուհին այդ գրքերի միջոցով հասնում էր իր նպատակին: Մեդիչիի խորամանկության անտեղյակ հակառակորդները գրքերը թերթելիս՝ մատները բերանն էին տանում՝ թացացնելու նպատակով և թունավորվում:

Դժվար է այժմ որոշել, թե դա պատմականորեն ինչքան է ճիշտ: Բայց միանգամայն հնարավոր էր, որ մարդիկ գրքի միջոցով թունավորվեն:

Ցավոք սրտի, դեռևս կան դպրոցականներ, որոնք գիրք կարդալիս անպայման մատները տանում են բերանը, թքոտում, որպեսզի հեշտությամբ թերթեն գրքի էջերը: Բավական է նայել այդպիսիների դասագրքերը. էջերի ներքևի աջ անկյունները մաշված են, խոնավությունից կուչ եկած, սևացած, պատահում է, որ անգամ դժվարությամբ են կարդացվում գրքի վերջին տողերը:

Երբ գրադարանից մի հետաքրքիր գիրք ենք վերցնում, տեսնում ենք, որ նրա էջերի անկյունները մաշված են: Դա հատկապես լինում է հետաքրքիր գրքերի հետ, որովհետև լավ գիրքը շատերն են կարդում:

Եվ այսպես, գիրքը շատ կարճ ժամանակում կորցնում է իր սկզբնական գեղեցիկ տեսքը:

Սակայն սա հարցի միայն մի կողմն է: Թուքը մնալով գրքերի էջերին՝ ներծծվում է նրա մեջ: Պատկերացրեք, թե գիրքը ինչպիսի վտանգ կարող է ներկայացնել, երբ ընկնի անգինա, դիֆտերիա, քութեշ կամ տարափոխիկ այլ հիվանդություն ունեցողների ձեռքը: Գրքի էջերի վրա կմնան հիվանդության միկրոբներ, որոնք կարող են անցնել հաջորդ ընթերցողներին և վարակել: Գիրքը շարունակ ձեռքից ձեռք է անցնում, լինում տարբեր բնակարաններում, գրադարաններում, մուտք գործում հիվանդանոցներ և սանատորիաներ, հիմնարկներ և դպրոցներ, ուղևորների հետ երկար ճանապարհներ անցնում:

Գիրքը պետք է թերթել միայն չոր և մաքուր մատներով, էջը բացել վերևի աջ անկյունից, չծալել նրա թերթերը և որ շատ կարևոր է, մատները չթքոտել:

Պետք է խնամքով վարվել գրքի հետ, որն ինչպես Մ. Գորկին է ասել, գիտելիքների աղբյուր է: Դա անհրաժեշտ է, ինչպես գրքի կյանքը երկարացնելու, այնպես էլ նրա միջոցով հիվանդությունների փոխանցումը կանխելու համար:

# ԲԵԹՀՈՎԵՆ

(Ծննդյան 185 տարին)

«Ազատությունը սիրիր կյանքից ավելի»— գրել է իր օրագրում հանճարեղ կոմպոզիտոր Բեթհովենը: Եվ իրոք, Բեթհովենի բոլոր լավագույն ստեղծագործությունները ներթափանցված են հերոսականության ու ազատության վեհ գաղափարներով:

Լյուդվիգ Վան Բեթհովենը ծնվել է 1770 թվականի դեկտեմբերի 16-ին Գերմանիայի Բոնն քաղաքում, աղքատ երաժշտի ընտանիքում:

Փոքրիկ Լյուդվիգը սկսել է նվագել սովորել դեռևս չորս տարեկան հասակից. նախ նա սովորում է նվագել կլավեսին, ապա և ֆլեյտա, երգեհոն, ջութակ:

Կանգնած փոքրիկ աթոռի վրա, ստեղնաշարի առաջ, Լյուդվիգը ուշադիր նվագում էր վարժություններ, բայց հենց որ հայրը հեռանում էր, նա թողնում էր վարժությունները ու սկսում ստեղծագործել:

Բեթհովենը ութ տարեկան էր, երբ առաջին անգամ համերգի մասնակցեց:

Տասներկու տարեկան հասակում նա ծառայում էր նվագախմբում, իսկ մի տարի հետո դարձավ պալատական երգեհոնահար:

Լյուդվիգը վաղ հասակում ճանաչեց և սիրեց կլասիկ երաժշտությունը: Նա հուզմունքով էր լսում Մոցարտի սիմֆոնիաները, Հայդնի սոնատներն ու կվարտետները:

Լյուդվիգի երաժշտական զարգացման համար շատ կարևոր էր նրա հանդիպումը այն ժամանակվա կրթված երաժիշտներից մեկի՝ Խրիստիան Նեֆեյի հետ: Նա Բեթհովենին ծանոթացրեց կոմպոզիտորական տեխնիկայի գաղափարներին, Սեբաստիան Բախի, Հենդելի երաժշտությանը:

Բեթհովենին հաջողվեց Նեֆեյի օգնությամբ հրապարակել իր առաջին ստեղծագործությունը՝ դաշնամուրային վարիացիաները:

Հաջողություններով թևավորված, նա որոշում է մեկնել Վիեննա, որտեղ ապրում էր Մոցարտը: Նա ուզում էր մեծ երաժշտի մոտ նվագել իր ստեղծագործությունները, լսել նրա խորհուրդները: Եվ ահա Բեթհովենը Վիեննայում է:

Բայց մոր ծանր հիվանդության մասին հանկարծակի լուրը խորտակում է նրա բոլոր ծրագրերը, բոլոր հույսերը: Բեթհովենը ստիպված էր շտապ վերադառնալ տուն: Ընտանիքը սովից փրկելու համար Լյուդվիգը իր վրա է վերցնում ամբողջ ընտանիքի հոգսը: Բայց նա համառորեն շարունակում է լարված կերպով զբաղվել երաժշտությամբ, գրականությամբ և փիլիսոփայությամբ:

1792 թվականի հուլիսին էր. Լոնդոնից Վիեննա վերադառնալիս կոմպոզիտոր Հայդնը մի քանի օրով կանգ է առնում Բոննում, որտեղ տեղի երաժիշտները նրա պատվին կազմակերպում են հանդիսավոր ընդունելություն: Այստեղ Բեթհովենը Հայդնին ցույց է տալիս իր վերջին կանտատան: Ստեղծագործությունը Հայդնին դուր է գալիս, և նա Լյուդվիգին առաջարկում է պարապել իր մոտ: Բեթհովենը վերջնականապես տեղափոխվում է Վիեննա: Նա իր հետ տանում է նոր ստեղծագործությունների մի ամբողջ կապոց: Դրանց մեջ էր և Գյոթեի՝ փոքրիկ մուրացկանի մասին բանաստեղծության խոսքերի հիման վրա գրված սրտառուչ երգը: Դա «Սուրկոն» էր, որին հետո վիճակված էր դառնալ Բեթհովենի ամենասիրված երգերից մեկը:

Վիեննայում Բեթհովենին գրեթե չի հաջողվում պարապել Հայդնի մոտ, բայց նա ստեղծագործում է մեծ եռանդով և միաժամանակ հանդես է գալիս որպես դաշնակահար:

Մեկը մյուսի հետևից Բեթհովենը նոր ստեղծագործություններ է գրում, որոնք տոգորված էին հերոսականությամբ, դեպի ճշմարտությունն ու ազատությունը մեծ պոռթկումով: Բեթհովենի հաջակը սկսում է տարածվել ամենուրեք: Բայց դժբախտությունն արդեն բախում էր դուռը: Բեթհովենն սկսում էր խլանալ, որը քանի գնում այնքան ավելի անավոր էր դառնում: Նրա համառ կամքը հաղթահարեց հիվանդությանը: «Ոչ,— գրում է Բեթհովենն իր մտերիմներից մեկին,— ես կբռնեմ ճակատագրի կոկորդից, նրան չի հաջողվի ինձ բոլորովին ընկճել. օ՜հ, ինչ հրաշալի է ապրել հազար անգամ»:

1804 թվականին նա գրում է երրորդ սիմֆոնիան:

Այնուհետև Բեթհովենը գրում է իր ավելի հռչակավոր ստեղծագործությունները՝ «Սոնատա-ապասիոնատան», որի մասին հիացմունքով է խոսել Լենինը, «Ֆիդելիո» օպերան, հաջորդ հինգ սիմֆոնիաները, «Կորիոլան» սիմֆոնիկ նախերգանքը, Գյոթեի «Էգմոնտ» դրամայի համար գրած երաժշտությունը, չորրորդ և հինգերորդ դաշնամուրային կոնցերտները, շատ սոնատներն ու կվարտետները:

Բեթհովենի ստեղծագործության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում ժողովրդական երգերի մշակումները: Գերմանական, ավստրիական, ռուսական, լեհական, ուկրաինական, շոտլանդական, իռլանդական մեղեդիները զարդարում են նրա շատ սիմֆոնիկ ու կամերային ստեղծագործությունները:

Ամբողջ կյանքում Բեթհովենը չէր դադարում ազատ ու երջանիկ մարդու մասին մտածելուց:

Ավստրիայի առանձին ռեակցիոն կառավարողների կողմից Բեթհովենին արվող ոչ մի մեծարում չէր կարող ստիպել նրան փոխել իր հայացքները և ատելությունը դեպի ազնվականությունը:

Հիվանդ, բոլորովին խուլ, միայնակ Բեթհովենն ստեղծում է իր ամենամեծ երկը՝ իններորդ սիմֆոնիան՝ երջանկության և ազատության սիմֆոնիան:

Բեթհովենը մեռավ 1827 թվականի մարտի 26-ին:

Ց. ԲՐՈՒՏՅԱՆ
*(Արվեստագիտության թեկնածու)*

# ԱՌՆԵՏԸ

Խոսք՝ Վ. ԳՅՈԹԵԻ

Երաժշտ.՝ Լ. Վ. ԲԵԹՀՈՎԵՆԻ



Allegretto

Եր - կրից — եր-կիր անց-նում եմ ես, Ինձ հետ էլ իմ առ-նե - տը, Ապ -

րուստ օր-վա գտ-նում եմ ես, Ինձ հետ էլ իմ առ - նե - տը: Տե - սել եմ շատ հա-

րուստ մարդ-կանց, Ինձ հետ էլ իմ առ - նե - տը, Սի - րով նե միշտ նա - յել կա-նանց, Ինձ

հետ էլ իմ առ - նե - տը:

Երկրից-երկիր անցնում եմ ես,
Ինձ հետ էլ իմ առնետը,
Ապրուստ օրվա գտնում եմ ես,
Ինձ հետ էլ իմ առնետը:
Տեսել եմ շատ հարուստ մարդկանց.
Ինձ հետ էլ իմ առնետը,
Սիրով նե միշտ նայել կանանց.
Ինձ հետ էլ իմ առնետը:
Տեսել եմ շատ ջահել աղջիկ,
Ինձ հետ էլ իմ առնետը,
Նայել են ինձ ժպտով քաղցրիկ,
Ինձ հետ էլ իմ առնետը:
Բարի մարդիկ, մի բան տվեք,
Ինձ հետ էլ իմ առնետը,
Ուտել է պետք, խմել է պետք,
Ինձ հետ էլ իմ առնետը:

*Գերմաներենից թարգմ.*

*Գ. ՄԻՐԱՅԵԼՅԱՆ*

## ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

# «ՏԱԹԵՎԻԿԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ»

Տաթևիկը փոքրիկ աղջիկ էր: Նրա մայրիկը գործարանի ինժեներ էր, իսկ հայրիկը սովորում էր Մոսկվայում:

Մի օր փոստատարը հեռագիր բերեց հայրիկից: Այդ հեռագիրը շատ ուրախացրեց Տաթևիկին:

— Ջա՜ն, ջա՜ն, գնում ենք Մոսկվա,— ուրախ ճչում էր նա և թռչկոտում սենյակում:

Հաջորդ օրը Տաթևիկը, մայրիկը և փոքրիկ Վիգենը նստեցին գնացք:

Մի գիշեր Տաթևիկը վագոնի լուսամուտից մեծ-մեծ բոցեր տեսավ և կարծեց, թե դուրսը հրդեհ է ընկել: Բայց զինվորական քեռին, որի հետ Տաթևիկը շատ էր մտերմացել, բացատրեց, որ դրանք Դոնբասի դոմնային վառարանների կրակներն են:

Չորրորդ օրը երեկոյան երևացին Մոսկվայի լույսերը: Այդ լույսերն այնքան շատ էին, որ մութ երկինքը կարմիր գույն էր դարձել: Շուտով Տաթևիկը տեսավ գնացքի կողքով վազող փայտե տնակներ, ծխնելույզներով գործարաններ, աշտարակավոր շենքեր, շա՜տ շենքեր, բոլորն էլ լուսավոր, մեծ, բարձր:

Գնում էին, գնում ու չէին հասնում կայարանին: Անցնում էին ասֆալտած պլատֆորմներով, նորից մտնում էին անտառ, դուրս էին գալիս երկարե բարձր




կամուրջների վրա, բայց ճանապարհը չէր վերջանում: Վագոնի երկու կողմից սուլելով գալիս թռչում էին ուրիշ-ուրիշ գնացքներ, շոգեքարշերով ու առանց շոգեքարշերի՝ ինչպես տրամվայներ: Քաղաքը մեկ փակվում էր, մեկ էլ հանկարծ շողշողուն, անծայր փռվում էր Տաթևիկի աչքերի առաջ:

Վերջապես գնացքը մտավ քաղաք: Որքան շատ էին գնում դեպի քաղաք, այնքան ավելի պայծառ ու գեղեցիկ էր դառնում Մոսկվան:

Մի շաբաթ Մոսկվայում մնալուց հետո Տաթևիկը մայրիկի ու Վիգենի հետ ինքնաթիռով վերադարձավ Երևան, սիրելի պապիկի ու տատիկի մոտ:

Ինչքա՜ն հրաշալիքներ տեսավ և շատ բան սովորեց Տաթևիկը մեր հայրենիքի մայրաքաղաքում...

Թե ինչ տեսավ նա, դուք կիմանաք, երբ կարդաք Անժելա Ստեփանյանի «Տաթևիկի ճանապարհորդությունը» գիրքը, որը Հայպետհրատը լույս է ընծայել վերջերս:

Դուք կծանոթանաք նաև Տաթևիկի չարաճճի բնավորության հետ:

Ա. Ստեփանյանի «Տաթևիկի ճանապարհորդությունը» կարդացվում է մեծ հաճույքով:

Գիրքը լավ է ձևավորել նկարիչ Ա. Գևորգյանը:

# «ԼԱԼ ՀԱՄԱԶԸ»

*Հայպետհրատը լույս է ընծայել Սերո Խանզադյանի մանկական պատմվածքների գրքույկը: Այդ պատմվածքներում հեղինակը ընթերցողին ծանոթացնում է իր դառն ու տխուր մանկության հետ:*

*Ծանր է եղել հայ աշխատավոր գյուղացու վիճակը նախասովետական շրջանում: Յուրաքանչյուր գյուղում լավ էին ապրում միայն մի քանի հոգի. դրանք գյուղի հարուստներն էին: Նրանք զավթել էին հողերի մեծ մասը և անգթորեն շահագործում էին հողազուրկ գյուղացիներին ու նրանց հաշվին հարստանում:*

*Նախասովետական գյուղը տառապում էր տգիտության ու խավարի մեջ: Չկար դպրոց, գրադարան, կինո...*

*Տխուր և անհետաքրքիր էր երեխաների կյանքն այն ժամանակ: Նրանք մեծանում էին սովի ու թշվառության մեջ:*

*Ահա այդ մասին է պատմում Սերո Խանզադյանը «Լալ Համազը», «Գրազը»*




*և «Թալանը» պատմվածքներում: Գրքույկի երեք պատմվածքներն էլ մեր ընթերցողներից շատերին ծանոթ են. դրանք տպվել են մեր ամսագրում:*

*Ս. Խանզադյանը գրում է գեղեցիկ ու պարզ լեզվով: Նրա նկարագրած դեպքերն ու մարդիկ երկար ժամանակ մնում են ընթերցողի հիշողության մեջ:*

*Կարդալով այդ գրքույկը, ընթերցողն ատելությամբ է լցվում հին կարգերի ու նրանց տերերի դեմ, որոնց վերջ տվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան:*

*Սերո Խանզադյանի «Լալ Համազը» գրքույկից շատ բան ունեն սովորելու մեր պատանի ընթերցողները:*

*Պատմվածքների բովանդակության յուրացմանը օգնում են Ալ. Գրիգորյանի հաջող նկարները:*

# ԿՈՒՍՏԱՆԱՅԻ ԳԱՆՁԸ

*Կուստանայի և Ջելյաբինսկի մարզերը հարևաններ են։ Բայց որքա՜ն տարբեր է եղել նրանց բախտը։ Հապա բաց արեք ձեր աշխարհագրության դասագիրքը և կարդացեք զետեղված նյութերը։ Այդ մարզերից մեկի մասին շատ բան է ասված, իսկ մյուսի մասին՝ մի քանի խոսք։ Եվ դա զարմանալի չէ։ Ջելյաբինսկի մարզը արդյունաբերական Ուրալի մի կարևոր մասն է։ Այնտեղ կան հանքեր, հսկայական գործարաններ, նոր քաղաքներ. իսկ Կուստանայի մարզը տափաստանների երկիր է։ Միայն վերջերս էր, որ մշակվեցին այնտեղի ամայի խոպանները։ Սակայն շատ շուտով այդ մարզում էլ կբարձրանան արդյունաբերական վիթխարի կենտրոններ։ Սովետական հետախույզները մարզի ընդերքում անսպառ հարստություններ են գտել։ Կուշմուրուն կայարանի մոտ քարածխի հարուստ շերտեր են հայտնաբերված. իսկ այդ տեղից ոչ հեռու, ուր տափաստանային Այաթ գետակը թափվում է Տոբոլ գետի մեջ, հայտնաբերված են աշխարհի ամենամեծ երկաթահանքերը։*

*Այդ գանձը գտել են ոչ թե երկրաբանները, այլ մի օդաչու։ Բանն այսպես է եղել։ Օդաչու Մ. Սուրգուտանովը թռչում էր Կուստանայի տափաստանի վրայով և քիչ էր մնում ընթացքից շեղվեր։ Հանկարծակի դադարեցին գործելուց բոլոր սարքերը, իսկ կողմնացույցի սլաքը անհանգիստ տատանվեց։ Օդաչուն հասկացավ, որ ընկել է մագնիսային փոթորկի մեջ։ Այստեղ, այս միապաղաղ տափաստանում, որ տարածված էր օդանավի թևերի տակ, ինչ-որ վատ բան կար։ Մ. Սուրգուտանովը նշեց կոորդինատները և երկրաբաններին պատմեց, թե ինչ կատարվեց տափաստանում։ Երկրաբանները գտան մագնիսային փոթորկի պատճառը. դա գետնի տակ ընկած մի վիթխարի մագնիս էր՝ չափազանց հարուստ երկաթահանքեր, մագնետիտների հանքավայրեր։*

*Մոտակա Սոկոլովկա ավանի և տափաստանային Սարբայ լճի անունով նոր հանքավայրը կոչվեց Սոկոլովկա-Սարբայան։ Այս հանքավայրը արժեքավոր է ոչ միայն իր անսպառ պաշարներով, այլև նրանով, որ գտնվում է գետնի երեսին մոտիկ և հանելու համար հորեր կառուցելու կարիք չկա։ Կարելի է հողի վերին շերտը վերցնել և հանքը մշակել բաց եղանակով. դա և՛ հարմար է, և՛ էժան։ Բայց հողի այդ շերտն այնքան էլ բարակ չէ։ Երբ էքսկավատորներն այդ հողը հանեն, իսկ ինքնաթափ ավտոմեքենաները տանեն թափեն, տափաստանում կբարձրանա մի սար, որի երկարությունը կլինի ավելի քան երեք կիլոմետր, իսկ բարձրությունը երկու հարյուր մետր։ Այսքան հողը քանդել հանել կարելի է միայն հզոր մեքենաներով։*

*Հիմա Սոկոլովկա-Սարբայան կոմբինատում աշխատում են Սվերդլովսկի հսկայական էլեկտրական էքսկավատորները, Մինսկի քսանհինգ տոննանոց ինքնաթափները, Կալինինգրադի հիսուն տոննանոց ինքնաբեռնաթափվող վագոն-դումպկարները։ Երկրի բոլոր ծայրերից այստեղ են եկել հմուտ շինարարներ։*

*Երբ օդանավով թռչում ես Սոկոլովկա-Սարբայան կոմբինատի վրայով, արդեն պարզորոշ երևում է վիթխարի փոսորակը։ Շուտով նրա խորքը կսլանան էլեկտրագնացքները, իսկ տասնյակ քայլող էքսկավատորներ երկաթահանքը կբեռնեն վագոններին։ Հարստացնող ֆաբրիկայում հանքաքարը կմանրեն, մագնիսների օգնությամբ կանջատեն օտար խառնուրդներից և մաքրված երկաթը կգնա Ուրալի ու Ղազախստանի մետաղաձուլական գործարանները։*

*Արագ են ընթանում աշխատանքները փոսորակում։ Այդպես արագ էլ կառուցվում է նոր քաղաքը Տոբոլ գետի ափին։*

Վ. ՅԱԿՈՎԼԵՎ

# Կ Ր Ո Ս Վ Ո Ր Դ

**«Աշխարհի քարտեզի վրա»**

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Լա-Մանշը թափվող գետ, 2. Թերակղզի և գետ ՍՍՀՄ-ում, 4. Վոլգայի վտակ, 5. Մեծ Զոնդյան կղզի, 6. Նույնանուն գետեր, որոնցից մեկը թափվում, իսկ մյուսը սկիզբ է առնում Բայկալ լճից, 8. Կղզի Խաղաղ օվկիանոսում, 9. Քարտեզների ժողովածու, 12. Ժողովրդական Ռեսպուբլիկա Եվրոպայում, 13. Գետ Աֆրիկայում, 14. Ասիական պետության մայրաքաղաք նույնանուն գետի վրա, 15. Հրվանդան և ծովածոց Սախալինի հարավում, 16. Կուրորտ Ղրիմի թերակղզում, 17. Հունգարիայի և Հարավսլավիայի սահմանով անցնող գետ, 23. Պետություն Ասիայում, 24. Օգտակար հանածո, 25. Խոշոր բնագետ և անվանի ճանապարհորդ, 29. Հրվանդան Ավստրալիայի հարավում, 30. Քաղաք և նավահանգիստ Ֆրանսիայում, 32. Քաղաք Ռումինիայում, 33. Կղզի Մալայան արշիպելագում:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

3. Ռուս անվանի բնագետ, 6. Ասիական պետության մայրաքաղաք, 7. Հանգած հրաբուխ Ասիայում, 10. Երկրագնդի Հյուսիսային բևեռի շրջանի անվանումը, 11. Գետ Արևելյան Սիբիրում, 13. Գետ Հարավսլավիայում, 15. Քուռ գետի վտակ, 18. Քաղաք Ֆինլանդիայում, 19. Քաղաք Հոնսյու կղզում, 20. Բուսականությամբ ծածկված վայր անապատում, 21, Կուրորտ Սև ծովի ափին, 22. Պետություն



Լատինական Ամերիկայում. 25. Չինական ծոցը թափվող գետ. 26. Գետ Միջին Ասիայում, 27. Դանուբի վտակ, 28. Ասիայի խոշոր գետերից, 29. Եվրոպական պետության մայրաքաղաք, 31. Աշխարհամաս, 33. Քաղաք Չինաստանում, 34. Արևադարձային պտուղ:

Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

*Մեր ամսագրի 1955 թվականի 9-րդ և 10-րդ համարներում տպագրված ժամանցի պատասխաններն են.*

«Պիոներ» № 9.

*1. ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՉԱՅՆՎՈՐԴ.— 1. Մինսկ, 2. Կիև, 3. Վորկուտա, 4. Արզամաս, 5. Սիմֆերոպոլ, 6. Լենքորան, 7. Նովոսիբիրսկ, 8. Կոունրադ, 9. Դրոգոբիչ, 10. Չարջոու, 11. Ուֆա, 12. Ալավերդի, 13. Իժևսկ, 14. Կուրսկ, 15. Կալինին, 16. Նիկոլաև:*

*2. ՄՏԱԾԻՐ ԵՎ ԳՏԻՐ*

*ա) Վախեցած մրջյունը.— տասը օրում.*

*բ) Այն ո՞ր թիվն է.— յոթը:*

«Պիոներ» № 10.

*1. ՎԻԿՏՈՐԻՆԱ.— 1. Խ. Աբովյան, «Վերք Հայաստանի», 2. «Նախաշավիղ», 3. Րաֆֆի, «Սալբի», 4. Մուրացան, 5. Սայաթ-Նովա, 6. Հովհաննես Թումանյան:*

*2. ԻՆՉ Է ԳՐՎԱԾ ԱՅՍՏԵՂ.— Եղիր պատրաստ:*

*3. ՄՈԼՈՐԱԿՆԵՐ.— Մարս, Նեպտուն, Ուրան, Երկիր, Սատուրն, Վեներա, Յուպիտեր. կատարվի՝ Մերկուրի:*

*4. ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ.— Եղջերու, Սիրամարգ, Պինգվին:*

*Ճիշտ պատասխանել են՝ Լ. Խաչոյանը, Վ. Կոստանյանը (Երևան), Վ. Պողոսյանը, Լ. Կարապետյանը (Էջմիածին), Ս. Սաղաթելյանը (Վեդի); Կ. Վարդանյանը (Իջևան), Է. Կարախանյանը (Կարմիրի շրջան) և ուրիշներ:*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ նկ. Վ. ՄԻՆԱՍՅԱՆԻ*




Խմբագրական կոլեգիա՝ ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՏԱԼՅԱՆ Վ. (խմբագիր), ՕԶԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 14437: Պատվեր 1310: Տիրաժ 5000: Տպագրական 4 մամուլ: Ստորագրված է տպագրության 14/XII 1955 թ.:*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65:*

# ԷԼԵԿՏՐՈՄՈՏՈՐ

Էլեկտրոմոտորի հիմնական մասերն են՝ խարիսխը, ստատորը և կոլեկտորն իր խոզանակներով։ Խարիսխի հենակները պատրաստվում են 1—2 միլիմետր հաստություն ունեցող պղնձյա թիթեղից։ Հենակների վերին անցքերի մեջ հագցրվում է պողպատյա առանցքը, որին զոդվում է խարիսխի կմախքը։ Վերջինս ազատ պետք է պտտվի առանցքի շուրջը։ Հենակները ցածի անցքերով գամվում կամ պտուտակներով ամրացվում են փայտե պատվանդանին։ Խարիսխը պատրաստվում է երկաթյա թիթեղից կտրած առանձին թիթեղիկներից՝ նկարում ցույց տրված ձևով, իսկ կոլեկտորը՝ կիսագլանաձև երկու հատվածներից, շատ նուրբ պղընձյա թիթեղից։ Կոլեկտորի այդ երկու կիսագլանաձև թիթեղները սոսնձվում են խարիսխի առանցքի վրա հագցրած փայտյա փոքրիկ գլանին։ Մինչև սոսինձի չորանալն ու ամրանալը պետք է դրանք թելով ամուր կապել։ Շկիվը նույնպես պատրաստվում է փայտից և ամրացվում է խարիսխի առանցքի հակառակ ծայրին։ Խոզանակները պատրաստվում են նուրբ, ճկուն լատունից և ամրացվում պատվանդանին այնպես, որ շոշափեն կոլեկտորին հակադիր կողմերից։



Ստատորը կտրվում է և հավաքվում առանձին թերթիկներից։ Վերջինների համար անհրաժեշտ է վերցնել տանիքի կամ սովորական երկաթյա թիթեղ։ Նրա միջին հատվածի վրա հագցվում են ստատորի էլեկտրոմագնիսի երկու այտիկները։ Այտիկները պատրաստվում են նուրբ և միաժամանակ ամուր ստվարաթղթից, կամ մի միլիմետրանոց ֆաներայից։

Խարիսխի երկու բևեռները և ստատորը լար փաթաթելուց առաջ ծածկվում են մեկուսացնող ժապավենով կամ մոմաթղթով։ Կոճը փաթաթելու համար պիտանի են բոլոր տիպի իզոլյացիաներով պղնձալարերը։ Պղնձալարի տրամագիծը պետք է լինի 0,25—0,30 մմ.։ Ստատորի վրա փաթաթում են 12—16 մետր լար, գալարը գալարի կողքին և շերտը շերտի վրա։ Շերտերի միջև պետք է դնել մոմաթղթի շերտ։ Խարիսխի յուրաքանչյուր բևեռին կարելի է փաթաթել 6—8 մետր լար։ Երկու բևեռների փաթաթումը կատարվում է միևնույն ուղղությամբ։ Մի փաթեթի սկզբնածայրը զոդվում է մյուս բևեռի փաթեթի վերջածայրին։ Ազատ ծայրերը զոդվում են կոլեկտորի թիթեղների հավելվածներին։ Խարիսխի փաթեթները ստատորի փաթեթներին հաջորդաբար են միացված։ Հոսանքը պետք է կլիմայից հոսի դեպի խոզանակը, կոլեկտորից դեպի խարիսխի փաթեթները և մյուս խոզանակից դեպի ստատորի էլեկտրոմագնիսի գալարները։ Այնուհետև նա կհոսի դեպի երկրորդ կլիման։

Նկարագրված էլեկտրական մոտորիկը սնվում է գրպանի լապտերի մի փոքրիկ մարտկոցից և ունենում է այնքան հզորություն, որ կարողանում է շարժման մեջ դնել փոքրիկ նավակի, էլեկտրաքարշի և ուրիշ փոքրիկ մոդելներ։ Բացի այդ, էլեկտրոմոտորը դիտողական լավագույն պիտույք է ֆիզիկայի դասավանդման ժամանակ։

Մ. ՄԱԴԱԹՅԱՆ



# ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇՆԵՐԸ




1. ՌՍՖՍՌ դրոշը, 2. Ուկրաինական ՍՍՌ դրոշը, 3. Բելոռուսական ՍՍՌ դրոշը, 4. Ուզբեկական ՍՍՌ դրոշը, 5. Ղազախական ՍՍՌ դրոշը, 6. Վրացական ՍՍՌ դրոշը, 7. Ադրբեջանական ՍՍՌ դրոշը, 8. Լիտվական ՍՍՌ դրոշը, 9. Մոլդավական ՍՍՌ դրոշը, 10. Լատվիական ՍՍՌ դրոշը, 11. Կիրգիզական ՍՍՌ դրոշը, 12. Տաջիկական ՍՍՌ դրոշը, 13. Հայկական ՍՍՌ դրոշը, 14. Թուրքմենական ՍՍՌ դրոշը, 15. Էստոնական ՍՍՌ դրոշը, 16. Կարելո-Ֆիննական ՍՍՌ դրոշը: